# ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՎԵՑ ՈՒԽՏԸ ԻՐ ԺԱՄԱՆԱԿԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՀԵՏ

Հեղինակ՝ Մուհամմադ իբն Աբդ Ալլահ

Գլխավոր խմբագիր՝

Դոկտոր Ջոն Էնդրյու Մորոու

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԳԼՈՒԽ 1.
# ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏԸ ՍԻՆԱ ԼԵՌԱՆ ՀՈԳԵՎՈՐԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ

(Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ)
(թարգմանությունը՝ Ջոն Էնդրյու Մորոուի)

Հանուն ամենաողորմած և ամենագթառատ Աստծո

(Սույն ուխտի ձեռագիր օրինակը գրված Մուհամմադի՝ Աբդ Ալլահի որդու կողմից, թող Աստծո խաղաղությունը և օրհնությունը լինի նրան և բոլոր քրիստոնյաներին։)

Այս ուխտը գրված է Մուհամմադի՝ Աբդ Ալլահի որդու, ուղեկցի և ավետաբերի կողմից, ում վստահված է Աստծո արարածների պաշտպանությունը, որպեսզի մարդիկ չբողոքեն Աստծո դեմ Իր Դեսպանորդի [գալուստից] հետո, քանի որ Աստված ամենակարող է, իմաստուն։

Նա դա գրել է իր կրոնի հետևորդների և Արևելքում ու Արևմուտքում քրիստոնեության բոլոր դավանողների համար, լինի հեռու, թե մոտիկ, արաբների և ոչ արաբների, հայտնիների և ոչ հայտնիների համար՝ որպես ուխտ պաշտպանության։

Եթե որևէ մեկը խախտի երդումը, որը տրված է այստեղ, հակառակվի նրան կամ հերքի նրա պատվիրանները, նա կխախտի Աստծո ուխտը, կկտրի նրա հետ կապը, կծաղրի Նրա կրոնը, արժանի է [Աստծո] անեծքի՝ անկախ նրանից, թե նա սուլթան է, թե պարզապես հավատացյալ մուսուլմաններից մեկն է։

Եթե հոգևորականը կամ ուխտավորը պաշտպանություն է փնտրում լեռներում կամ դաշտում, քարանձավում կամ մշակվող դաշտերում, հարթավայրում, անապատում կամ եկեղեցում, ապա ես նրանց թիկունքում եմ՝ պաշտպանելու

ցանկացած թշնամուց, ես, իմ աջակիցները, իմ կրոնի բոլոր հետևորդները, բոլոր ինձ հետևողները, քանի որ նրանք [հոգևորականները և բոլոր ուխտավորները] իմ հպատակներն ու հովանավորյալներն են:

Ես պաշտպանում եմ նրանց ունեցվածքին դիպչելուց և հարկեր վճարելուց, եթե իրենց կամքով կհրաժարվեն վճարել: Այս հարցերում իրենց կամքին հակառակ պետք է չլինի որևէ պարտադրանք կամ սահմանափակում:

Եպիսկոպոսը չպետք է հեռացվի իր թեմից, ոչ մի վանականը՝ վանքից, ոչ մի ճգնավոր՝ իր աշտարակից, և ուխտավորին էլ չի կարելի խոչընդոտել նրա ուխտագնացության ժամանակ: Ավելին՝ նրանց ոչ մի եկեղեցական շենք չպետք է քանդվի, եկեղեցիների ունեցած դրամը չպետք է օգտագործվի մզկիթներ կամ մուսուլմանների տներ կառուցելու համար: Նա, ով նման բան է անում, խախտում է Աստծո ուխտը և հակառակվում Աստծո Դեսպանորդին:

Ոչ գլխահարկ, ոչ էլ այլ տիպի վճարներ չպետք է դնել վանականների, եպիսկոպոսների և հավատացյալների վրա, որտեղ էլ, որ նրանք գտնվեն՝ ցամաքում կամ ծովում, Արևելքում կամ Արևմուտքում, հյուսիսում կամ հարավում, քանի որ ես պաշտպանում եմ նրանց: Նրանք իմ պաշտպանության, իմ ուխտի և ապահովության ներքո են ցանկացած վնասի դեպքում:

Նրանք, ովքեր մեկուսացել են լեռներում կամ սրբազան խցերում, պետք է նաև ազատ լինեն գլխահարկից, հողի հարկից և տասանորդ վճարելուց կամ մաքսատուրքից՝ կապված այն ամենի հետ, ինչը նրանք աճեցնում են սեփական օգտագործման համար, և նրանց պետք է օգնություն ցուցաբերվի բերքն աճեցնելու համար՝ յուրաքանչյուր *արդաբում* [= 6 *վայբա* = 24 *ռուբա*] մեկական *կաղահայի* ազատ նպաստ [չոր չափի միավոր] նրանց անձնական օգտագործման համար:

Նրանք պարտավոր չեն լինի ծառայել պատերազմում կամ վճարել գլխագին. նույնիսկ նրանք, ում համար հողի վարձը վճարելու պարտականություն գոյություն ունի, կամ ովքեր միջոցներ են ստանում հողից կամ առևտրի շնորհիվ, չպետք է վճարեն ավելին, քան տարեկան տասներկու դիրհեմ մեկ գլխի համար:

Չի կարելի անարդարացի հարկ պարտադրաբար դնել ոչ ոքի վրա, Գրքի ժողովուրդների հետ որևէ վեճ չպիտի լինի, այլապես ամեն լավ բան կվերջանա [29: 46]: Մենք ցանկանում ենք նրանց վերցնել մեր ողորմածության թևերի ներքո, և բարկության պատիժը պետք է հեռու պահել նրանցից, որտեղ էլ որ նրանք լինեն կամ բնակվեն:

Եթե քրիստոնյա կինը մտնում է մուսուլմանական տնտեսություն, նրան պարտավոր են ընդունել բարությամբ և հնարավորություն տան աղոթելու իր եկեղեցում. չպետք է խառնվել նրա և այն մարդու վեճին, որ սիրում է նրա կրոնը: Նա, ով խախտում է Աստծո այս ուխտը և գործում է հակառակը, նա իր ուխտի և Դեսպանորդի աչքերում ապստամբ է:

Այդ մարդկանց պետք է օգնություն և օժանդակություն ցուցաբերել իրենց կրոնական շինությունների և կացարանների պահպանության հարցում. այսպիսով, նրանց պետք է օգնել իրենց հավատքում և անշեղորեն պահել իրենց հավատարմությունը:

Նրանցից ոչ մեկը չպետք է ստիպված լինի զենք կրել, սակայն մուսուլմանները պարտավոր են պաշտպանել նրանց. և նրանք երբեք չպետք է խախտեն այս խոստումը մինչև ժամը հասնի և աշխարհի վերջը գա:

Որպես այս ուխտի վկա, որը գրվել է Աստծո Դեսպանորդ, Մուհամմեդի՝ Աբդալլահի որդու կողմից, թող Աստծո խաղաղությունն ու օրհնությունը լինի նրան, բոլոր քրիստոնյաներին:

Ի երաշխավորումն այստեղ նկարագրված ամենի կատարման՝ հետևյալ անձինք դնում են իրենց ձեռքերը:

Վկաների անունները. Ալի իբն Աբու Տալիբ, Աբու Բաքր իբն Աբու Քուհաֆահ, Ումար իբն ալ-Խաթաբ, Ութման իբն Աֆֆան, Աբու ալ-Դարդա, Աբի Հուրայրահ, Աբդ Ալլահ իբն Մասուդ, Աբբաս իբն Աբդ ալ-Մութալիբ, Հասան իբն Թաբիտի, Աբդ ալ-Ազիմ իբն Հասան, ալ-Ֆադլ իբն Աբաս, ալ-Զուբայր իբն ալ-Ավամ, Տալհահ իբն Աբդ Ալլահ, Սաադ իբն Մուադի, Սաադ իբն Ուբադահ, Թաբիտ իբն Նաֆիս, Զայդ իբն Թաբիտ, Աբու Հանիֆա իբն Ուբայահ, Հաշիմ իբն Ուբայահ, Մուազամ իբն Քուրայշի, Աբդ Ալլահ իբն Ամր իբն ալ-Աս, Ամմար իբն Յասիր:

Այս ուխտը Ալի իբն Աբի Տալիբը գրել է իր ձեռքով Մարգարեի մզկիթում, թող խաղաղություն և Աստծո օրհնությունը լինի նրան, մուհարամ ամսվա երրորդ օրը, Մարգարեի Հիջրայի երկրորդ տարում:

Այդ ուխտի պատճենը պահ է տրվել Սուլթանի գանձարանին: Այն կնքվել է Մարգարեի կնիքով, թող խաղաղություն լինի նրան:

Այն գրվել է Տաիֆից բերված մագաղաթի մի հատվածի վրա:

Օրհնված լինի նա, ով պահում է նրա բովանդակությունը: Օրհնված լինի նա, քանի որ պատկանում է նրանց, ովքեր կարող են ակնկալել Աստծո ներումը:

Բնօրինակից պատճենված այս օրինակը կնքված է ազնիվ Սուլթանի ստորագրությամբ:

Այս կրկնօրինակը պատճենվել է այն կրկնօրինակից, որը պատճենվել է Հավատացյալների Առաջնորդի՝ Ալի իբն Աբի Տալիբի ձեռքով գրված կրկնօրինակից, թող Աստված օրհնի նրա դեմքը:

Ազնիվ Սուլթանի հրամանը, որը դեռ ուժի մեջ է, և Աստծո օգնությամբ, որը տրվեց Տուր-Սինա լեռան վրա

բնակվող վանականների համայնքին, քանի որ կրկնօրինակը, որը պատճենվել է Հավատացյալների Առաջնորդի կողմից գրված կրկնօրինակից, կորել էր, որպեսզի նրա փաստաթուղթը օժանդակի Սուլթանի արքայական հրամաններին, որոնք փաստվում են քննարկվող համայնքի ձեռքերում եղած արձանագրություններից:

Սա բնօրինակի վերարտադրությունն է առանց փոփոխության:

Գրված ամենանվաստը ստրուկներից ալ-Բարի Նուհ իբն Ահմադ ալ-Անսարի ձեռքով:

Եգիպտացի դատավորը՝ Պահապանը, ներել է նրանց:

Կնքված է կլոր կնիքով եւ վավերացված է:

Նուհ Ահմադ իբն ալ-Անսարի

[ստորագրություն]

Նմուշավորված է մի կնիքով, որի բնօրինակը ստորագրվում է այս ստորագրությամբ:

Գրված հին Եգիպտոսից խեղճ Մուհամմադ ալ-Քադիի կողմից, թող որ նա ներված լինի:

## ԳԼՈՒԽ 2.

## ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՀԵՏ

(Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ)

(թարգմանությունը՝ Լեոն Արփիի)

(խմբագրությամբ դոկտոր Ջոն Էնդրյու Մորոուի)

Աստծո կամոք, ամենաողորմած Աստծո անունից

Թող այս գրությունը հայտնի լինի բոլորին իր ձեռագրով և ոճով, մի հաստատուն համաձայնագիր. դաշնագիր, որին պետք է հնազանդվեն բոլոր քրիստոնյա ժողովուրդները, ովքեր ապրում են Արաբիայից և Պարսկաստանից արևելք գտնվող աշխարհում, կամ դրանց սահմաններում, անկախ նրանից նրանք անմիջական կապի մեջ են Հավատացյալների հետ, թե հեռու են գտնվում, կամ արդյոք նրանք ծանոթություն ունեն Հավատացյալների հետ: Այս Ուխտը և Համաձայնագիրը արժանի է հնազանդության, և բոլոր մուսուլմանները նույնպես պարտավոր են պահպանել դրա դրույթները: Ով որ դա կգնահատի որպես իր պարտադիր պարտականությունը հնազանդվելու սույն Ուխտի խոսքերին, նրա հավատքը կատարյալ է այն մարդկանց գործելակերպի համաձայն, որ բարիք են գործում, ինչպես այդպիսի մեկը, [ով] արժանի կգնահատվի պարգևատրման համար. բայց նրանք, ովքեր կամայականորեն կուրանան այս Դաշնագրի խոսքերը, չեղյալ կհայտարարեն այն կամ կգործեն դրան հակառակ կամ չեն հնազանդվի այս Համաձայնագրի պատվիրաններին, պահելով իրենց հակառակ դրան, այդպիսիները համարվելու են Աստծո Ուխտի կամ Համաձայնագրի անվավեր ճանաչողներ: Նա, ով նույնպես

անպատկառորեն կարհամարհի այս Գրությունը, պետք է պատժի արժանի լինի ՝ լինի նա թագավոր, թե մարդկանցից մեկը, թե լինի բարեպաշտ հավատացյալ (այսինքն մուսուլման), կամ ընդամենը հավատացյալ (այսինքն քրիստոնյա):

Այժմ. սկսել այս Համաձայնագրի խոսքերով, համաձայն Աստծո հուշման, ով շնորհել է ինձ դրա վավերականությունը: Ամուր կապով ես կապում եմ այս Համաձայնագիրը, որի նմանները նախկինում ոչ մի մարգարե չի կապել, և ինչպես Աստծո առջև կանգնած ոչ մի հրեշտակ հեշտ չի համարել այն պատվիրել: Ուստի այս Ուխտի խոսքերին, որոնք ես պատրաստվում եմ գրել, պետք է ենթարկվեն բոլոր նրանք, ովքեր իմ ժողովուրդն են:

Բոլոր բարեպաշտ հավատացյալները իրենց պարտականությունը պետք է համարեն պաշտպանել հավատացյալներին և օժանդակել նրանց, որտեղ էլ որ լինեն, անկախ այն բանից ՝ հեռու կամ մոտ, և ողջ քրիստոնեական աշխարհում պետք է պաշտպանել այն վայրերը, որտեղ նրանք կիրականացնեն երկրպագություն, և այնտեղ, որտեղ բնակվում են նրանց վանականներն ու քահանաները: Ամենուրեք՝ լեռներում, հարթավայրերում, քաղաքներում և ազատ վայրերում, անապատներում և այնտեղ, որտեղ էլ որ լինեն, մարդիկ պետք է պաշտպանված լինեն՝ ինչպես իրենց հավատքով, այնպես էլ իրենց ունեցվածքով, ինչպես Արևմուտքում, այնպես էլ Արևելքում, թե՛ ծովի և թե՛ ցամաքի վրա:

Եվ ինչպես որ նրանք հարգում և պատվում են ինձ, այնպես էլ մուսուլմանները պետք է հոգ տանեն այդ մարդկանց համար, քանի որ նրանք գտնվում են մեր պաշտպանության ներքո, և երբ էլ որևէ նեղություն կամ անհանգստություն հասնի նրանց, մուսուլմանները պարտավոր են իրենց պարտականությունը համարել նրանց օգնելու և խնամելու համար, քանի որ նրանք մարդիկ

են, ովքեր ենթակա են իմ ազգին, հնազանդ իրենց խոսքին, ում օգնականները նույնպես նրանք են:

Հետևաբար, պատշաճ է, որպեսզի հանուն ինձ նրանք հարմարավետություն, պաշտպանություն և օգնություն տրամադրեն նրանց՝ ի դեմս բոլոր հակառությունների և նեղությունների՝ ճնշելով այն ամենը, ինչը միջոց է դառնում նրանց ոչնչացման համար: Հարկերի գանձման ժամանակ անհրաժեշտ է սահմանել ոչ ավելին, քան նրանք կարող են վճարել, գործերը կարգավորել իրենց համաձայնությամբ՝ առանց ուժի կամ բռնության: Նրանց շինարարական ձեռնարկություններին չպետք է միջամտել. նրանց քահանաները չպետք է մեղադրվեն իրենց առաջադրանքի կատարման մեջ. նրանք չպետք է հալածվեն իրենց հավատքի կամ սովորույթների համար, այլ պետք է նրանց թույլատրել աղոթելու այնպես, ինչպես նրանք կցանկանան իրենց երկրպագության վայրերում և ըստ իրենց ծեսերի. նրանց եկեղեցիները չպետք է քանդվեն կամ ոչնչացվեն, կամ նրանց բնակարաններն ու առանձնատները չպետք է բռնագրավվեն մուսուլմանների կողմից մզկիթների կամ բնակավայրերի համար առանց նրանց համաձայնության: Ով որ չի անի այն, ինչ որ սահմանված է այստեղ, այլ կհակառակվի իմ հանձնարարություններին, նույնը պետք է լինի սույն Համաձայնագրի արհամարհողի նկատմամբ և Աստծո և նրա Մարգարեի խոսքին ընդդիմացողներին:

Չորս *դինարը* կամ մեկ վուշե սպիտակեղենի արժեքը գերազանցող ոչ մի հողի հարկ չպետք է գանձվի նրանցից, ինչը կկիրառվի հանուն մուսուլմանների օգտին և կպահվի որպես սուրբ վստահություն հասարակական օգտագործման համար: Նրանցից ոչինչ ավելին չպետք է գանձվի (այսինքն գլխահարկի միջոցով), քան այն, ինչ մենք սահմանում ենք այստեղ: Անկախ նրանից, թե նրանք վաճառականներ են և հարուստներ, և անկախ նրանից, որ նրանք բնակվում են ազատ գավառում, թե ծովային

մարգարիտներ են որսում ծովից, թե թանկարժեք քարերի, ոսկու կամ արծաթի հանքեր ունեն կամ այլ հարուստ կալվածքներ ունեն, չպետք է վճարեն ավելին, քան տասներկու *դիրհեմը*:

Նրանցից, ովքեր քրիստոնեական հավատքից չեն [և] չեն երկրպագում քրիստոնեական ծիսակարգի համաձայն, պետք է չորս *դիրհեմ* գանձվի: Բայց նրանցից, ովքեր համապատասխանում են այդ ժողովրդին և հնազանդ են իրենց խոսքին, չպետք է ավելին պահանջվի, քան վերը նշված *տասներկու* դիրհեմը, եթե նրանք բնակվեն այնտեղ, որտեղ բնակվում են իրենց ամբողջ ժողովուրդը: Նրանք, ովքեր ճանապարհորդում են և մշտական բնակության վայր չունենալով՝ անընդհատ տեղաշարժվում են, ենթակա չեն հողի հարկերի գանձման, բացառությամբ այն դեպքի, որ նրանցից որևէ մեկը ժառանգորդներ ունենա այն գույքի վրա, որի վրա իմամը իրավական պահանջ ունի, օրինական հարկը պետք է գանձվի, այնուամենայնիվ, այդպիսով հարկ վճարողը չպետք է դառնա բռնության կամ անօրինական գործողությունների զոհ՝ պարտադրվելով վճարել իր վճարման կարողությունից ավելին: Նրա առանձնատները, արտադրանքը և պտուղները չպետք է ագահության առարկաներ դառնան:

Քրիստոնյաներից չպետք է պահանջել մուսուլմանների համար պայքարել Հավատի թշնամիների դեմ, ոչ էլ մուսուլմանները պետք է պատերազմեն օտար ազգերի հետ, կամ կոտորածով զբաղվեն, հարկադրեն քրիստոնյաներին, որ իրենց հետ ընդհանուր գործ հարուցեն թշնամու դեմ: Բայց եթե թշնամին հարձակվի քրիստոնյաների վրա, ապա մուսուլմանները չպետք է խնայեն իրենց ձիերը, թրերն ու նիզակները նրա դեմ կիրառելուց: Այդպիսով նրանք հաճելի արարք կկատարեն:

Ոչ մի քրիստոնյայի չպետք է ստիպել, որպեսզի իսլամ դավանի, և նրանց ավելի լավ բաներ անելուց բացի չի

պատվիրվում որևէ վեճ ունենալ: Մուսուլմանները պետք է ամենուրեք ողորմության և բարության բազուկը տարածեն քրիստոնյաների վրա՝ պաշտպանելով նրանց ճնշողների հարստահարումներից: Եթե որևէ քրիստոնյա համարվի անզգուշորեն վիրավորող, մուսուլմանները պետք է իրենց պարտքը համարեն օգնել նրան՝ ուղեկցելով դատարաններ, այնպես որ նրանից չի կարելի ավելին գանձել, քան նախատեսված է Աստծո կողմից, և խաղաղությունը կարող է վերականգնվել վիճող կողմերի միջև ըստ Գրության:

Նախկինում դիտարկված բոլոր պայմանները, և նրանց կողմից վճարվող գլխահարկը, ոչ մի քրիստոնյա չպետք է բռնատիրվի կամ ճնշվի իմ ժողովրդի կողմից: Եվ ոչ էլ նրանք իրենց կողմից չպետք է բռնատիրեն մուսուլմաններին կամ ճնշեն նրանց, այս պահից սկսած մինչև այն ժամանակ, երբ Աստված կարգադրի: Մուսուլմանները չպետք է բռնի ուժով տանեն քրիստոնյաների կանանց և օրիորդներին, այլ միայն նրանց տերերի համաձայնությամբ, բացառությամբ այն դեպքերի, երբ նրանք ազատ ընտրությամբ կցանկանան միավորվել մուսուլմանների հետ և ամուսնանալ նրանց հետ՝ մշտապես կամ միայն որոշ ժամանակով, երբ դա նրանց թույլատրվի՝ հաշվի առնելով այն կանանց ազատ կամքը, ովքեր պետք է ազատ լինեն ամուսնանալու նրա հետ, ում իրենք սիրում և ընտրում են: Եվ եթե որևէ քրիստոնյա կին ամուսնանա մուսուլմանի հետ, ապա նրան թույլատրվում է շարունակել քրիստոնեական հավատքը՝ քրիստոնյաների եկեղեցիներ հաճախելով առանց թույլտվության կամ խոչընդոտների, և նա ըստ իր հաճելիության կապրի իր սեփական հավատքի և օրենքների համաձայն: Ոչ մի խոչընդոտ չպետք է լինի նրա հոգևոր խորհրդականների հետ շփվելու ճանապարհին. ոչ էլ նրան հարկադրաբար և իր կամքին հակառակ չպետք է պարտադրել թողնել սեփական հավատն ու օրենքները: Յուրաքանչյուր ոք, ով կկատարի

սույն Պայմանագրի խոսքերին հակառակ, պետք է համարվի նույնը, ինչ Աստծո դեմ, և նրան մեղավոր պետք է ճանաչել Մարգարեի առաջ՝ Աստծո մարգարեի Ուխտի խոսքերը չեղյալ հայտարարելու համար: Այդպիսի մեկը պետք է մեղավորների շարքը դասվի Աստծո առջև:

Քրիստոնյաները պետք է հաճախեն բոլոր եկեղեցիների, մատուռների և վանքերի վերանորոգմանը: Եթե բարեգործ մուսուլման հասարակության և իրենց հավատքի շահերից ելնելով՝ մուսուլմանները օգնություն խնդրեն քրիստոնյաներից, վերջիններս չպետք է նրանց մերժեն օգնել՝ որպես բարեկամության և բարի կամքի արտահայտություն, որ նրանք ի վիճակի են ցուցաբերել: Տեսնելով, որ քրիստոնյաները մեզ են հպատակվել, մեր պաշտպանությունը փնտրել և ապաստան գտել մեզ մոտ, մենք կարծում ենք, որ նրանց տրամադրված ամբողջ օգնությունն ու աջակցությունը ամեն կերպ օրինական են: Եթե նրանցից որևէ մեկն ուղարկվի որպես դեսպան՝ մուսուլմանների և անհավատների միջև խաղաղության շուրջ բանակցություններ վարելու համար, ոչ ոք չպետք է կանխի նրա գնալը, և եթե նա ապացուցի մեր գործին ծառայելը, թող ծառայությունը ընդունվի. բայց ով որ նրան արհամարհի, կհամարվի ամբարիշտների շարքում, մեղավոր Աստծո Մարգարեի առջև, և թշնամին նրա մերկացնող խոսքի:

[Այստեղ հաջորդում է նաև Մուհամմադի՝ Աստծո Մեծ Մարգարեի Դաշնագիրը (թող Աստծո օրհնությունները լինեն նրա և նրա սերունդների վրա) քրիստոնյա ժողովրդի հետ, մի Դաշնագիր, որը Ձերդ Մեծությունը նախորդ խոսքերից հետո պատվիրեց և հաստատեց քրիստոնյաների հետ՝ ի համեմատ իրենց հավատքի և օրենքների՝ ընդունելով մի քանի պատվիրաններ, որոնց միջոցով քրիստոնյաները իրենց պետք է պարտավորված համարեն: Թող նրանք ոչինչ չանեն նախորդ խոսքերին ի հակառակ, և

ամեն ինչ համահունչ արվի հետնյալների հետ]:

Պատվիրաններից մեկը սա է. որ նրանք ոչ մի օգնություն չցուցաբերեն անհավատներին, լինի դա բացահայտ կամ ծածուկ, և ոչ էլ իրենց տներում ընդունեն մուսուլմանների թշնամիներին, որ չլինի թե հարմար առիթի դեպքում նրանք հարձակվեն նրանց վրա: Նրանք չպետք է թույլ տան թշնամու մարդկանց կանգ առնել իրենց տների կամ եկեղեցիների մոտ, ոչ էլ նրանք պետք է օթևան տրամադրեն թշնամու զորքերին, կամ էլ նրանց օգնեն նիզակով, նետով, սրով կամ ձիով կամ որևէ այլ բանով:

Նրանք չպետք է նրանց որպես ուղեցույց գործեն կամ ցույց տան, թե ինչպես դարանակալել թշնամուն: Նրանք չպետք է իրենց ունեցվածքը հանձնեն նրանց անվտանգ պահպանման համար. նրանք չպետք է շփվեն նրանց հետ կամ օգնեն նրանց խոսքով կամ գործով կամ նրանց ապաստարան տան, բացառությամբ միայն ճնշման ներքո:

Եթե մուսուլմանը պատահի որ լինի քրիստոնյայի տանը, ապա նա կարող է երեք օր և երեք գիշեր զվարճանալ այնտեղ. դրանից ավելին ավելորդ է: Քրիստոնյաները պետք է կանխեն բռնակալների չարաշահումներն ու ճնշումները մուսուլմանների նկատմամբ:

Այն դեպքում, երբ նրանց համար անհրաժեշտ լինի մուսուլմանին թաքցնել իրենց առանձնատներում կամ տներում, նրանք նրան պետք է պառկելու տեղ տրամադրեն և հոգ տանեն նրա մասին՝ ոչ լքելով նրան, և ոչ էլ թողնելով առանց սննդի, այնքան ժամանակ, որքան նա թաքնված կմնա: Մուսուլմանների կանայք և երեխաները չպետք է դավաճանվեն կամ ներկայացվեն թշնամուն, և ոչ էլ քրիստոնյաները չպետք է շեղվեն այս պատվերներից:

Եվ եթե որևէ քրիստոնյա սույն Դաշնագրին հակառակ գործի կամ անտեսի այն, ապա կհամարվի, որ նա անվավեր է ճանաչում այն: Այդպիսի մեկը Աստծո համար նողկալի է, և Մարգարեն պետք է նրան արդար հատուցում մատուցի:

Այդ պատճառով բոլոր քրիստոնյաները թող համարեն, որ պարտադիր և պատշաճ է հետևել սույն Դաշնագրի խոսքերին այնքան ժամանակ, մինչև Աստված կպատվիրի:

Ի վկայություն դրա, կցվում է այն ստորագրությունը, որ հոգևորականության և ազգի տերերի, սուրբ, Մեծ Մարգարեի՝ Մուհամմադի ներկայությամբ, ամրացված է՝ հաստատելով վերը նշված Դաշնագիրը:

Ամենակարող Աստված և Տերը Բոլորի:

Աստծո Մեծ Մարգարեի, Տիրոջ Ընտրյալի՝ Մուհամմադի պատվիրանի համաձայն՝ (թող Աստծո օրհնությունը լինի նրան և նրա սերունդներին), սույն Դաշնագիրը կազմվել է Հիջրայի չորրորդ տարվա առաջին չորս ամիսներին հաջորդող երկուշաբթի օրը:

## ԳԼՈՒԽ 3.
## ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏԸ ՆԱՋՐԱՆԻ ՀՈԳԵՎՈՐԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ

(Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ)

(թարգմանությունը՝ Ջոն Էնդրյու Մորրոուի)

(Ներածություն)

Հանուն Աստծո՝ ամենակարեկից, ամենաողորմած:

Աստծո և Իր Դեսպանորդի կողմից Գրքի ժողովրդին՝ քրիստոնյաներին տրված պաշտպանության ուխտը, ովքեր պատկանում են Նաջրանի կրոնին կամ որևէ այլ քրիստոնեական աղանդի:

Այն գրվել է Մուհամմադի՝ ողջ մարդկության Աստծո Աուրհանդակի կողմից՝ որպես Աստծո և Նրա Դեսպանորդի պաշտպանության երաշխիք՝ պարտադիր դարձնելով մուսուլմանների համար, ովքեր կհետևեն նրան, որից նրանք պետք է տեղյակ լինեն, ճանաչեն այն որպես վավերական, հավատան դրան և պահպանեն ի շահ իրենց:

Արգելվում է ցանկացած մարդու, անկախ այն բանից նա կառավարիչ է կամ իշխանավոր, չեղարկել կամ խախտել այն:

Հավատացյալները չպետք փոխեն դրանք այլ պայմաններով, քան նրանք, որոնք ներառված են այս փաստաթղթում:

Նա, ով պահպանում է այն, հարգում է այն, և ենթարկվում է նրա պատվիրաններին, կատարած կլինի իր պարտավորությունները և հետևած կլինի Աստծո Դեսպանորդի ուխտին:

Սակայն նա, ով կխախտի այն, կընդդիմանա դրան կամ կփոխի այն, իր գլխին հանցագործություն կբերի, որովհետև նա դավաճանած կլինի Աստծո Ուխտը, խախտած կլինի իր

հավատը, դիմադրած կլինի Նրա իշխանությանը և հակադրված կլինի Նրա Դեսպանորդի կամքին. այսպիսով, նա ինքնակոչ կհանդիսանա Աստծո աչքերում: Պաշտպանելու համար պարտադիր է, որ Աստծո կրոնը և ուխտը հաստատվի: Նա, ով չի ենթարկվում այս ուխտին, խախտած կլինի իր սուրբ պարտավորությունները, իսկ նա, ով կխախտի իր սուրբ պարտավորությունները, անհավատարիմ է, և կմերժվի Աստծո և բոլոր անկեղծ հավատացյալների կողմից:

Պատճառը, որի համար քրիստոնյաներն արժանի են համարվել Աստծո, Նրա Դեսպանորդի և հավատացյալների պաշտպանության այս ուխտին, այն է, որ դա իրենց վաստակած իրավունքն է, որի հանդեպ պարտավորություն ունի ամեն մի մուսուլման, ձեռք բերել այս ուխտը, որը հաստատված է իրենց օգտին այս կրոնի մարդկանց կողմից, և որը պարտավորեցնում է յուրաքանչյուր մուսուլմանին հարգել այն, պաշտպանել այն, պահպանել այն, պահպանել այն հավերժ և ապրել դրանով:

Հիրավի, այն մարդիկ, ովքեր հետևում էին հին կրոններին և հնագույն Գրքերին, թշնամություն էին արտահայտում Աստծո և Նրա Դեսպանորդի նկատմամբ և ատում էին նրանց՝ մերժելով Մարգարեի առաքելությունը, որը Աստված՝ Ամենաբարձրյալը, հստակ հայտարարել է Իր Գրքում: Սա ցույց է տալիս նրանց կրծքերի անազնվությունը, նրանց մտադրությունների չարությունը և նրանց սրտի կարծրությունը: Նրանք իրենք պատրաստել էին իրենց հանցագործության բեռը՝ թաքցնելով այն մեկը, որին Աստված ցանկանում էր նրանց պարտադրել, հայտարարելով այն թաքցնելու փոխարեն և վկայելով այն հերքելու փոխարեն:

Այս մարդիկ գործեցին ի հակառակ իրենց վրա դրված պարտավորության, չպահպանեցին այն, ինչպես պետք էր, չհետևեցին հստակ նշված ճանապարհներին և

համաձայնեցին միայն իրենց թշնամությունը ցույց տալ Աստծո և Նրա Դեսպանորդի նկատմամբ, և համոզել մարդկանց դաժանությամբ և կեղծ փաստարկներով, որ Աստված չէր կարող նրան ուղարկել մարդկությանը՝ հռչակելու, քարոզելու և Նրա թույլտվությամբ կանչելու Աստծուն, լինել փայլող լամպ և դրախտ խոստանալ նրանց, ովքեր հնազանդվեցին նրան և կրակը նետելու նրանց, ովքեր նրան չհնազանդվեցին:

Նրանք գերազանցեցին ընդդիմանալու սահմանները՝դրդելով մյուսներին անել այն, ինչ իրենք երբեք չէին համարձակվի անել՝ մերժել նրա հայտնությունը, մերժել նրա առաքելությունը և խորամանկությամբ ստիպել նրան ենթարկվել որոգայթներին:

Նրանք թիրախավորեցին Աստծո Մարգարեին և որոշեցին սպանել նրան: Նրանք ամրապնդեցին Կուրայշ ցեղի բազմաստվածների, ինչպես նաև մյուսների կուսակցությունը, որպեսզի պայքարեն նրա դեմ, վիճարկեն նրա վարդապետությունը, ստիպեն այն հետ վերցնել և հակադրվեն դրան:

Այդ պատճառով նրանք արժանի էին զրկվել Աստծո դաշինքից և Նրա պաշտպանությունից: Նրանց պահվածքը Հունեյնի օրերին, Բանի Քայնուքայի, Կուրայզաhի և Նադիրի ցեղի դեմ ճակատամարտերը հայտնի են: Նրանց առաջնորդները աջակցում էին Մեքքայի բնակիչներին՝ Աստծո թշնամիներին, Աստծո Դեսպանորդի դեմ և զորքերով ու զենքով նրանց աջակցում էին Մարգարեի դեմ՝ ելնելով հավատացյալների հանդեպ ատելությունից:

Ի հակառակ՝ քրիստոնյաները հրաժարվեցին պատերազմ սկսել Աստծո և Նրա Դեսպանորդի դեմ: Աստված նույնպես հայտարարեց, որ նրանց փափկությունը այս հավատքի հետևորդների նկատմամբ և իրենց ջերմությունը մուսուլմանների հանդեպ անկեղծ էին:

Ի թիվս այլ գովասանքի խոսքերի, որոնք Աստված

շնորհել է նրանց Իր Գրքում և Նրա հայտնություններում, համոզվելով իրեաների սրտի կարծրության մեջ, Նա ճանաչում է նրանց հակումն ու ջերմությունը հավատացյալների նկատմամբ.

*Անշուշտ, դուք կհանդիպեք,* ասում է Նա, *ամենադաժան մարդկանց, ովքեր թշնամություն են տածում նրանց հանդեպ, ովքեր հավատում են հրեաներին (հրեաներ են) և նրանց, ովքեր բազմաստված են, և, անշուշտ, դուք կգտնեք ամենամոտ բարեկամությունը նրանց կողմից, ովքեր հավատում են նրանց (նրանք են), որ ասում են. «Մենք քրիստոնյա ենք». այն պատճառով, որ նրանց մեջ կան քահանաներ և վանականներ, և քանի որ նրանք իրենց հպարտ չեն պահում: Եվ երբ նրանք կլսեն այն, ինչ բացվել է Դեսպանորդին, կտեսնեք, որ նրանց աչքերը լցվում են արցունքներով իրենց ճանաչած ճշմարտության պատճառով. նրանք ասում են. «Մեր Տեր: Մենք հավատում ենք, այնպես որ (ճշմարտության) վկայի միջոցով գրի՛ր մեզ:* Եվ ինչու՞ չպետք է հավատանք Աստծուն, և ի՞նչ է մեզ վար իջել ճշմարտությունից: Եվ մենք հուսով ենք, որ մեր Տիրոջ կողմից ընդունվելու ենք ուղղամիտ և բարիք գործողների շարքում»: [5:82-83]

Փաստորեն, քրիստոնյաներից ոմանք, ովքեր արժանի էին վստահության և գիտեին աստվածային կրոնը, օգնեցին մեզ հռչակել այս կրոնը և օգնության եկան Աստծո և Նրա Դեսպանորդին՝ քարոզելով մարդկանց Իր կամքին համապատասխան և օգնելով նրան կատարել իր առաքելությունը:

Սայիդը, Աբդու Յաշու իբն Հիջրան, Իբրահիմ վանականը և Իսա Եպիսկոպոսը Նաջրանից եկան ինձ տեսնելու՝ քառասուն հեծյալների ուղեկցությամբ և այլոց հետ, ովքեր նրանց նման քրիստոնեական կրոն են դավանում ինչպես Արաբիայի, այնպես էլ օտար հողերում: Ես նրանց տեղեկացրի իմ առաքելության մասին և խնդրեցի,

որ նրանք օգնեն ամրապնդել, հռչակել այն և օժանդակել դրան:

Եվ քանի որ Աստծո գործը նրանց համար ակնհայտ դարձավ, նրանք ոչ ետքայլ արեցին և ոչ էլ թիկունք ցույց տվեցին: Ընդհակառակը, նրանք մտերմացան, մնացին ամուր, համաձայնեցին, օժանդակեցին, հաստատեցին, առատ խոստումներ տվեցին, տվեցին լավ խորհուրդներ և երդումներով ու ուխտերով հավաստիացրին ինձ, որ նրանք կաջակցեն այն ճշմարտությանը, որը ես բերեցի, և որ նրանք ետ կմղեն նրանց, ովքեր մերժեցին և հակադրվեցին դրան:

Այն բանից հետո, երբ նրանք վերամիավորվեցին իրենց հավատակիցներին, նրանք չխախտեցին իրենց ուխտը և ոչ էլ փոխեցին իրենց միտքը: Ընդհակառակը, նրանք հետևեցին, թե ինչ էին ինձ խոստացել, երբ նրանք իմ մոտից հեռացան, և ես, ի մեծ հաճույս ինձ, իմացա, որ նրանք ապացուցեցին իրենց նվիրվածությունը, միավորվեցին պատերազմ սկսելու հրեաների դեմ և որ նրանք փոխհասկացողության եկան Կոչման ժողովրդի հետ՝ հրապարակել Աստծո գործը, սատարել դրան և պաշտպանել դրա առաքյալներին, և որ նրանք մերկացրել են այն ապացույցները, որոնց վրա հրեաները ապավինել էին, որպեսզի հերքեին և խոչընդոտեին իմ առաքելությանն ու իմ խոսքին: Քրիստոնյաները ձգտում էին սատարել իմ գործողություններին և պատերազմ սկսեցին ընդդեմ նրանց, ովքեր ատում էին իմ վարդապետությունը և ովքեր ցանկանում էին հերքել, վերափոխել, մերժել, փոխել և տապալել այն:

Բոլոր արաբ առաջնորդները, բոլոր ղեկավար մուսուլմանները, և ամբողջ Կոչման մարդիկ, ամբողջ աշխարհից ինձ ուղարկեցին նամակներ, որոնք արտահայտում էին քրիստոնյաների սերը իմ գործի հանդեպ, նրանց ջերմեռանդությունը՝ հետ մղելու իրենց շրջանի ամրացված սահմանների երկայնքով արված

արշավանքները, նրանց վճռականությունը պահպանելու այն դաշնագիրը, որը նրանք կապել էին ինձ հետ, երբ հանդիպեցին ինձ հետ, և որը ես շնորհեցի նրանց: Որովհետև, Հիրավի, եպիսկոպոսներն ու վանականները ցույց տվեցին անսասան հավատարմություն՝ կցվելով իմ գործին և իրենց անձերի նվիրվածությունը՝ հաստատելու և աջակցելու իմ առաքելության տարածմանը:

Ես ուզում եմ, որ իմ առաքելությունը տարածվի: Ես խնդրում եմ նրանց, որ միավորվեն՝ ի աջակցություն այս նպատակի ընդդեմ նրանց, ովքեր կհերքեն և կմերժեն իմ վարդապետության տեսակետները, ովքեր կցանկանային ոչնչացնել և կործանել այն՝ մեղադրելով նրանց և նվաստացնելով նրանց:

Նրանք գործեցին ըստ իմ ցուցումների և նվաստացրին նրանց: Նրանք այնքան ջանացին, որ ստիպեն նրանց խոստովանել ճշմարտությունը հպատակությամբ, պատասխանել Աստծո կոչին, իրենց կամքով կամ ուժով, թույլ տալով, որ նրանք ներգրավվեն որպես (իսլամի կողմից) նվաճված մարդիկ: Քրիստոնյաներն այս կերպ գործեցին՝ պահպանելով իրենց և իմ միջև կնքված դաշնագրերը, որպեսզի նրանք չկարողանան կատարել այն պարտավորությունները, որոնք նրանք կատարել էին իրենց հետ իմ ունեցած հանդիպման ժամանակ և նախանձախնդրության ոգով աջակցել իմ գործին և հայտնի դարձնել իմ առաքելությունը:

Նրանք իրենց հավատարիմ նվիրվածությամբ տարբերվում էին հրեաներից, քուրայշցիներից և մյուս բազմաստվածներից: Նրանք ցույց չտվեցին աշխարհիկ շահի որևէ ցանկություն, որի համար հրեաները ձգտում և փափագում էին՝ կիրառելով վաշխառություն, փող փնտրելով և Աստծո օրենքը վաճառելով թշվառ գներով: Վայ նրանց, ովքեր աշխատում են այդպիսի շահի համար: Վայ նրանց իրենց գրածի համար, և վայ նրանց, որ նրանք ձեռք

են բերում այդպիսի միջոցներով:

Որպես այդպիսին, իրեաներն ու Քուրայշի բազմաստվածները ուրիշների հետ միասին արժանի էին որպեսզի իրենց վերաբերվեին որպես Աստծո և Նրա Դեսպանորդի թշնամիներ՝ իրենց դավաճանական ծրագրերի, (իմ դեմ) իրենց թշնամության, իրենց նյութած դավադրությունների և կատաղի, ընդմիջվող պատերազմի պատճառով, որ նրանք մղեցին՝ ի աջակցություն իմ թշնամիների: Այսպիսով նրանք դարձան Աստծո, Նրա Դեսպանորդի և բարի հավատացյալների թշնամիները:

Քրիստոնյաները, սակայն, վարվում էին բոլորովին հակառակ ձևով: Նրանք հարգեցին իմ դաշինքը: Նրանք ճանաչեցին իմ իրավունքները: Նրանք կատարեցին այն խոստումները, որոնք նրանք տվել էին մեր հանդիպման ընթացքում: Նրանք օգնում էին իմ օգնականներին, որոնց ես ուղարկել էի սահմաններ: Նրանք վաստակեցին իմ մտահոգությունն ու իմ ջերմությունը՝ կատարելով այն պարտավորությունները, որոնք ես ինքնաբուխ պայմանավորվել էի նրանց հետ բոլոր մուսուլմանների անունից, որ տարածվում են Արևելքից Արևմուտք, իմ կյանքի ընթացքում և իմ մահից հետո իմ պաշտպանությունը, երբ Աստված կընդունի իմ մահը: Քանի դեռ իսլամը կտարածվի, և իմ իրական առաքելությունն ու հավատը կաճեն, այս ուխտը պարտադիր կլինի բոլոր հավատացյալների և մուսուլմանների համար, այնքան ժամանակ, քանի դեռ ջուրը լցնում է օվկիանոսի հատակը, անձրևը թափվում է երկնքից, երկիրը բույսեր է հանում, երկիրը բույսեր է տալիս, աստղերը փայլում են երկնակամարում, և լուսաբացը հայտնվում է ճանապարհորդին, և ոչ մեկին չի թույլատրվի խախտել այս դաշնագիրը, փոփոխել այն, ավելացնել դրան, ջնջել դրանից, քանի որ նման լրացումները խախտում են իմ ուխտը, և ճնշումները թուլացնում են իմ պաշտպանությունը:

Այս ուխտը, որը ես ցանկանում եմ ինքս ինձ հետ համաձայնեցնել, կապում է ինձ: Իմ ումմայից որևէ մեկը, ով ինձնից հետո կխախտի Աստծո այս ուխտը, թող փառավորված և փառաբանված լինի Նա, Աստծո ապացույցը կբարձրացվի նրա դեմ, և Աստված բավարար է որպես Վկա:

Այն, ինչ ինձ դրդում է այսպես վարվել, այն է, որ երեք մարդ (Սեյիդ Ղասանիից) ինձնից խնդրեցին մի փաստաթուղթ, որը հանդես կգա որպես անվտանգ վարքականոն, դաշնագիր, որը ճանաչում էր նրանց հավատարմությունը իրենց խոստումներին մուսուլմանների հանդեպ և այն պայմանագրին, որը ես ինքնակամ կնքեցի նրանց հետ:

Ես ուզում էի, որ դաշինքի մանրամասները վավերացվեն նրանց աչքերի առաջ, ովքեր հետևում են իմ ճանապարհին արաբական բոլոր շրջաններում, և որ ես և իմ մասնագիտության տեր մարդիկ պարտավոր ենք ձեռնպահ մնալ պատասխանատվությունից, ովքեր իրենց անվանում են քրիստոնյաներ, և ովքեր հետևում են քրիստոնեական տարբեր աղանդներից որևէ մեկին և որ այս պայմանագիրը լինի անձեռնմխելի, հանդիսավոր և պարտադիր բոլոր մուսուլմանների և հավատացյալների համար:

Ուստի ես կանչեցի մուսուլմանների առաջնորդներին և իմ հիմնական ուղեկիցներին և, հավատարիմ մնալով քրիստոնյաների պահանջին, պատրաստեցի այս փաստաթուղթը, որը մուսուլմանները, անկախ իշխանություն ունենալուց, պարտավոր են պահպանել սերնդեսերունդ, իրականացնել իմ պատվերները, որպեսզի պահպանվի հավատարմության և հարգանքի պարտականությունը նրանց նկատմամբ, ովքեր խնդրել են այս դաշնագիրն ինձնից և հավատարիմ մնան այն պարտականություններին, որոնք ես պայմանագրով

հաստատել եմ, որպեսզի նրանք չհանդիմանվեն իմ հրամանին չհնազանդվելու համար:

Ժողովուրդը նույնպես պետք է ձեռնպահ մնա նրանց վնասելուց և պահպանի այն ուխտը, որը ես կապել եմ նրանց հետ, որպեսզի նրանք կարողանան ինձ հետ միասին մտնել հավատարմության դարպասներ և նպաստել այն բարիքին, որը ես արել եմ նրանց համար, ովքեր վաստակել են այն իմ առաքելությանն աջակցելու համար և վրդովեցրել մերժողներին և թերահավատներին:

Որպեսզի չլինի որևէ ապացույց նրանց կողմից, ովքեր այս ուխտի առարկա են հանդիսանում իսլամի պառակտիչների դեմ, եթե սրանք դեմ գործեին այս փաստաթղթի բովանդակությանը՝ չկարողանալով ճանաչել այն իրավունքները, որոնք նրանք վաստակել են ինձնից, և որոնք նրանք արժանի էին ձեռք բերել:

Վերջապես, այս ուխտը (հավատացյալներին) հիշեցնում է բարեսիրտ լինել, խրախուսում է բարի կամքը, պատվիրում է բարեգործություն, ետ է պահում չարին, և կամքն Աստծո անկեղծության ճանապարհին է և արդարություն տանող ուղին:

[*Մարգարեի ուխտը Նաջրանի քրիստոնյաների հետ*]

Հանուն Աստծո՝ ամենաբարեգութ, ամենաողորմած:

Այս փաստաթուղթը տրամադրվել է Մուհամմադ իբն Աբդ Ալլահ իբն Աբդ ալ-Մութալիբի կողմից՝ Աստծո Դեսպանորդը համայն մարդկության, ով ուղարկվել է քարոզելու և նախազգուշացնելու, թե ում է տրվել Աստծո վստահությունը Իր արարածների մեջ, որպեսզի մարդկային էակները Աստծո առջև ոչ մի պատրվակ չունենան՝ նրա առաքյալներից և դրսևորումներից հետո, այս Հզոր և Իմաստուն Էակի առաջ:

Սայիդ Իբն Հարիթ իբն Քաաբին, նրա հավատակիցներին և բոլոր նրանց, ովքեր դավանում են քրիստոնեական կրոնը, լինեն նրանք Արևելքում կամ Արևմուտքում, մերձակա կամ հեռավոր շրջաններում, լինեն դրանք արաբներ, թե օտարերկրացիներ, հայտնի կամ անհայտ:

Այս պատրաստված փաստաթուղթը ներկայացնում է հեղինակավոր պայմանագիր, վավերական վկայագիր, որը ստեղծվել է սովորույթի և արդարադատության, ինչպես նաև անձեռնմխելի դաշնագրի հիման վրա:

Նա, ով հետևում է այս հրովարտակին, ցույց է տալիս իր կապվածությունն իսլամին, արժանի կլինի իսլամի առաջարկած լավագույնին: Ընդհակառակը, ցանկացած մարդ, ով այն կոչնչացնի, կխախտի այն պարունակող դաշինքը, կփոփոխի այն, չի հնազանդվի իմ պատվիրաններին, նա խախտած կլինի Աստծո դաշնագիրը, կոտնահարի իր դաշինքը և կարհամարհի իր պայմանագիրը: Նա կարժանանա նրա նզովքին՝ լինի իշխող հեղինակություն, թե մեկ ուրիշը:

Ես պարտավորվում եմ դաշինք կապել և խոստում տալ նրանց հետ Աստծո անունից և դրանք դնում եմ Նրա մարգարեների, Նրա ընտրյալի, Նրա սրբերի, մուսուլմանների և հավատացյալների, նրանցից առաջինի և վերջինի հովանու ներքո: Այդպիսին է իմ դաշինքը և նրանց հետ դաշնագիրը:

Ես ևս մեկ անգամ հայտարարում եմ այն պարտավորությունները, որոնք Աստված դրել է Իսրայելի որդիների վրա՝ հնազանդվել Նրան, հետևել Նրա օրենքին և հարգել Նրա աստվածային դաշինքը: Սույնով ես հայտարարում եմ, որ իմ հեծյալները, իմ հետևակ զինվորները, իմ բանակները, իմ միջոցները և իմ մուսուլման կողմնակիցները կպաշտպանեն քրիստոնյաներին, որքան էլ որ նրանք հեռու գտնվեն,

անկախ նրանից, թե նրանք բնակվում են իմ կայսրությանը սահմանամերձ հողերում, ցանկացած շրջանում, մոտ կամ հեռու, ինչպես խաղաղ, նույնպես և պատերազմի ժամանակներում:

Ես պարտավորվում եմ աջակցել նրանց, նրանց անձերը, ինչպես նաև նրանց եկեղեցիները, մատուռները, աղոթատները, նրանց վանականների վանքերը, նրանց ճգնավայրերը դնել իմ պաշտպանության ներքո, որտեղ էլ որ գտնվեն, լինեն նրանք լեռներում կամ հովիտներում, քարանձավներում կամ բնակեցված շրջաններում, հարթավայրերում կամ անապատում:

Ես կպաշտպանեմ նրանց կրոնը և նրանց եկեղեցին, որտեղ էլ գտնվեն, լինի դա երկրի կամ ծովի վրա, Արևմուտքում կամ Արևելքում, իմ, իմ տան մարդկանց և ընդհանուր առմամբ մուսուլմանների կողմից առավելագույն զգոնությամբ:

Ես նրանց դնում եմ իմ պաշտպանության ներքո: Ես նրանց հետ դաշնագիր եմ կնքում: Ես պարտավորվում եմ պաշտպանել նրանց վնասներից և չարիքներից, ազատել նրանց ցանկացած բռնագրավումներից կամ ծանր պարտականություններից և ինքս պաշտպանել նրանց՝ իմ օգնականների, իմ հետևորդների և իմ ազգի միջոցով ինձ և նրանց թիրախավորող յուրաքանչյուր թշնամու դեմ:

Իշխանություն ունենալով նրանց վրա՝ ես պետք է կառավարեմ նրանց՝ պաշտպանելով նրանց բոլոր վնասներից և ապահովելով, որ ոչինչ չի պատահի նրանց հետ, ինչը չի պատահում ինձ և իմ ուղեկիցների հետ, ովքեր ինձ հետ միասին պաշտպանում են իսլամի գործը:

Ես արգելում եմ հավատքի ցանկացած նվաճողներին իրենց արշավանքների ժամանակ իշխել նրանց վրա, կամ պարտավորեցնել նրանց հարկ վճարել, եթե իրենք կամովին չհամաձայնվեն: Ոչ մի քրիստոնյա երբեք չպետք է ենթարկվի բռնության կամ ճնշումների այս դեպքում:

Չի թույլատրվում եպիսկոպոսին հեռացնել իր եպիսկոպոսությունից, վանականին՝ իր վանական կյանքից կամ անապատականին՝ իր կոչումից որպես ճգնավոր: Չի թույլատրվում ոչնչացնել նրանց եկեղեցիների որևէ մասը, նրանց շենքերի մի մասը վերցնել մզկիթներ կամ մուսուլմանների տներ կառուցելու համար: Ով այդպիսի բան կանի, նա կխախտի Աստծո դաշնագիրը, չի հնազանդվի Նրա Դեսպանորդին և օտարված կլինի աստվածային դաշինքից:

Չի թույլատրվում գլխահարկ կամ որևէ տեսակի հարկ պարտադրել վանականներին կամ եպիսկոպոսներին, ոչ էլ նրանցից որևէ մեկին, ովքեր նվիրումով կրում են բրդյա հագուստ կամ միայնակ ապրում են լեռներում կամ մարդկային բնակությունից զուրկ այլ շրջաններում:

Թող լինի տարեկան չորս *դիրհեմի* սահմանաչափ, որը պետք է վճարեն բոլոր մյուս քրիստոնյաները, ովքեր հոգևորականներ, վանականներ կամ ճգնավորներ չեն: Հակառակ դեպքում թող նրանք ապահովեն գծավոր նյութերից մեկ հանդերձանք կամ մեկ ասեղնագործված տուրբան Եմենից: Սա մուսուլմաններին օգնելու և հանրային գանձարանի աճին նպաստելու համար է: Եթե նրանց համար դժվար կլինի զգեստն ապահովել, ապա նրանք պետք է ապահովեն դրա համարժեք գինը, եթե իրենք կամովին համաձայնեն:

Թող քրիստոնյաների գլխահարկը, ովքեր ունեն եկամուտ, ովքեր ունեն հողատարածքներ, ովքեր ներգրավված են ցամաքով կամ ծովով կատարվող նշանակալի առևտրում, ովքեր հանքեր են շահագործում թանկարժեք քարերի, ոսկու և արծաթի համար, ովքեր հարուստ են, չգերազանցի տարեկան տասներկու *դիրհեմը*, այնքան ժամանակ, քանի դեռ նրանք այս երկրների բնակիչներ են և ապրում են այնտեղ:

Թող ոչ մի նմանատիպ բան չպահանջվի այն ճանապարհորդներից, ովքեր այս երկրի բնակիչներ չեն կամ անցորդներ են, ում բնակության երկիրն անհայտ է:

Չպետք է լինի գլխահարկի հետ ուրիշ հողի հարկ, քան նրանց համար, ովքեր ունեն հողամասեր, ինչպես ժառանգված ունեցվածքի տիրապետող մյուս բնակիչները, որոնց նկատմամբ կառավարիչն իրավունք ունի: Նրանք պետք է հարկեր վճարեն, ինչպես մյուսներն են վճարում դրանք, այնուամենայնիվ առանց իրենց միջոցների չափը անարդարացիորեն գերազանցող գանձումների: Ինչ վերաբերում է աշխատուժին, որը սեփականատերերն օգտագործում են այդ հողերը մշակելու, դրանք բերրի դարձնելու և դրանցից բերք ստանալու համար, ապա դրանք չափից դուրս հարկման ենթակա չեն: Թող նրանք վճարեն նույն ձևով, ինչպես սահմանվեց նմանատիպ այլ հարկատուների դեպքում:

Մարդիկ, ովքեր պատկանում են մեր դաշինքին, չպետք է պարտավորված լինեն պատերազմ գնալ մուսուլմանների հետ, որպեսզի պայքարեն նրանց թշնամիների դեմ, հարձակվեն նրանց վրա և տիրեն նրանց: Հիրավի, դաշինքի անդամները չպետք է պատերազմի մասնակցեն: Հենց սա պետք է ազատի նրանց այս պարտավորությունից, որ շնորհվել է նրանց այս դաշնագիրը, ինչպես նաև նրանց հավաստիացնել մուսուլմանների կողմից նրանց համար օգնությունն ու պաշտպանությունը: Ոչ մի քրիստոնյա չպետք է ստիպված լինի մեկ մուսուլմանի հարմարություններ տրամադրել փողի, զենքի կամ ձիերի տեսքով պատերազմի դեպքում, որի ժամանակ հավատացյալները կհարձակվեն իրենց թշնամիների վրա, մինչև որ նրանք այդ գործին կամովին չնպաստեն: Նա, ով այդպես է անում, և ինքնաբուխ նպաստում է, կլինի գովասանքի, պարգևատրման և երախտագիտության առարկա, և նրա օգնությունը չի մոռացվի:

Ոչ մի քրիստոնյա չպետք է ստիպողաբար մուսուլման դառնա: *Եվ դուք մի՛ վիճեք Գրքի ժողովրդի հետ, բացի այն միջոցներից, որոնք ավելի լավ են* [29:46]: Նրանք պետք է ծածկվեն գթասրտության թևով: Հեռացրե՛ք յուրաքանչյուր վնաս, որը կարող է հասնել նրանց, որտեղ էլ նրանք գտնվեն և ցանկացած երկրում, որտեղ նրանք գտնվում են:

Եթե մի քրիստոնյա պետք է հանցանք կամ հարձակում գործի, մուսուլմանները պետք է նրան օգնություն, պաշտպանություն և պահպանություն տրամադրեն: Նրանք պետք է ներեն նրա հանցանքը և խրախուսեն նրա զոհին հաշտվել նրա հետ՝ հորդորելով ներել նրան կամ փոխհատուցում ստանալ փոխարենը:

Մուսուլմանները չպետք է լքեն քրիստոնյաներին, անտեսեն նրանց և թողնեն նրանց առանց օգնության և աջակցության, քանի որ ես Աստծո անունից նրանց հետ կնքեցի այդ դաշնագիրը, որպեսզի ապահովեմ, որ ցանկացած լավ բան մուսուլմանների հետ պատահելիս, նրանց ևս բաժին կհասնի, և ինչ վնաս որ լինի մուսուլմաններին, նույնը և նրանց բաժին ընկնի: Այս դաշնագրի շնորհիվ նրանք ձեռք են բերել անձեռնմխելի իրավունքներ՝ մեր պաշտպանությունը վայելելու, իրենց իրավունքները ցանկացած ոտնահարումից պաշտպանելու համար, որպեսզի նրանք կապված լինեն մուսուլմաններին ինչպես լավ, այնպես էլ վատ ճակատագրով:

Քրիստոնյաները չպետք է ենթարկվեն տառապանքի, չարաշահման՝ կապված այն ամուսնությունների հետ, որոնք նրանք չեն ցանկանում: Մուսուլմանները չպետք է ամուսնանան քրիստոնյա աղջիկների հետ նրանց ծնողների կամքին հակառակ, ոչ էլ պետք է ճնշեն նրանց ընտանիքներին այն դեպքում, եթե նրանք մերժել են իրենց նշանվելու և ամուսնության առաջարկները: Նման ամուսնությունները չպետք է տեղի ունենան առանց նրանց ցանկության և համաձայնության և առանց նրանց

հավանության և թույլատվության:

Եթե մուսուլմանը որպես կին է առնում քրիստոնյա կնոջը, ապա նա պետք է հարգի նրա քրիստոնեական հավատալիքները: Նա պետք է ազատություն տա նրան՝ լսելու իր [հոգևորական] վերադասներին, ինչպես ինքն է ցանկանում և հետևել իր սեփական կրոնի ուղուն: Ցանկացած ոք, ով, չնայած այս կարգին, կստիպի իր կնոջը գործել իր դավանանքին հակառակ ցանկացած առումով, նա խախտած կլինի Աստծո դաշինքը և բաց ապստամբություն կբարձրացնի Նրա Դեսպանորդի դաշնագրի դեմ, և Աստված նրան ինքնակոչների շարքը կդասի:

Եթե քրիստոնյաները դիմեն ձեզ՝ մուսուլմանների օգնությունն ու աջակցությունը խնդրելու համար, որպեսզի վերանորոգեն իրենց եկեղեցիներն ու վանքերը կամ իրենց կրոնի գործերին վերաբերող հարցերը կազմակերպեն, ապա նրանք պետք է օգնեն և աջակցեն նրանց: Այնուամենայնիվ, նրանք չպետք է անեն դա՝ նպատակ ունենալով ստանալ որևէ վարձատրություն: Ընդհակառակը, նրանք պետք է անեն այդ կրոնը վերականգնելու համար՝ ելնելով Աստծո Դեսպանորդի դաշնագրի հանդեպ հավատարմությունից, մաքուր նվիրատվությամբ և որպես Աստծո և Նրա Դեսպանորդի առջև որպես գովաբանության արժանի արարք:

Նրանց և իրենց թշնամիների միջև պատերազմի գործերում մուսուլմանները ոչ մի քրիստոնյա չպետք է վերցնեն որպես Դեսպանորդ, հետախույզ, ուղեկցող կամ լրտես կամ պատերազմի որևէ այլ պարտականություն կատարելու համար: Նա, ով նրանցից մեկին կպարտավորեցնի նման բան անել, կխախտի Աստծո իրավունքները, ապստամբ կլինի Նրա Դեսպանորդի դեմ և ինքն իրեն դուրս կդնի Նրա դաշինքից: Ոչինչ չի թույլատրվում մուսուլմանին [քրիստոնյաների

առնչությամբ] այս հրամանագրերին ենթարկվելուց բացի, որոնք Մուհամմադ իբն Աբդ Ալլահը՝ Աստծո Դեսպանորդը, անցկացրեց հօգուտ քրիստոնյաների կրոնի:

Ես նաև պայմաններ եմ դնում [քրիստոնյաների վրա], և ես պահանջում եմ, որ նրանք խոստանան կատարել և բավարարել դրանք որպես իրենց կրոնի պատվիրաններ, որոնց թվում, ի թիվս այլ բաների, նրանցից և ոչ մեկը չի կարող գործել որպես հետախույզ, լրտես, կամ բացահայտ կամ գաղտնի կերպով, պատերազմի թշնամու կողմից մուսուլմանի դեմ: Նրանցից ոչ մեկը չպետք է պատսպարի իրենց տներում մուսուլմանների թշնամիներին, որտեղից նրանք կարող էին սպասել այն պահին, որպեսզի սկսեն հարձակումը: Թող որ [մուսուլմանների] այս թշնամիներին երբեք թույլ չտրվի կանգ առնել իրենց շրջաններում, լինի դա իրենց գյուղերում, աղոթատներում կամ որևէ այլ վայրում, որը պատկանում է իրենց հավատակիցներին: Նրանք չպետք է որևէ աջակցություն ցուցաբերեն մուսուլմանների պատերազմի թշնամիներին՝ զինելով նրանց զենքով, ձիերով, տղամարդկանցով և որևէ այլ բանով, ոչ էլ պետք է լավ վերաբերվեն նրանց: Նրանք պետք է երեք օր և երեք գիշեր հյուրընկալեն ցանկացած մուսուլմանի, որ կանգ կառնի նրանց մոտ իր կենդանու հետ: Որտեղ էլ գտնվեն և ուր էլ որ գնան, նրանք պետք է առաջարկեն նրանց նույն կերակուրը, որով իրենք են ապրում, այնուամենայնիվ, առանց պարտավորված լինելու դիմանալ այլ անհանգստացնող կամ ծանր բեռներին:

Եթե մուսուլմանը կարիք ունենա թաքնվել նրանց տներից կամ աղոթատեղերից մեկում, ապա նրանք պետք է նրան հյուրընկալեն, օգնություն առաջարկեն և տրամադրեն իրենց կերակուրն այն ամբողջ ընթացքում, երբ նա կլինի նրանց մեջ, նաև ամեն ջանք գործադրելով նրան թաքցնելու համար և կանխելով, որպեսզի թշնամին չգտնի նրան՝ միաժամանակ ապահովելով նրա բոլոր կարիքները:

Նա, ով կհակառակվի կամ կփոփոխի այս հրամանագրի որոշումները, դուրս կնետվի Աստծո և Նրա Դեսպանորդի միջև դաշինքից:

Թող որ բոլորը պահեն վանականների հետ կնքված պայմանագրերը և դաշինքները, և որոնք ես ինքս եմ կնքել, և յուրաքանչյուր այլ պարտավորություն, որ յուրաքանչյուր մարգարե իր ազգի հետ է պայմանավորվել, որպեսզի նրանց երաշխավորի ապահովություն և վստահելի պաշտպանություն և նրանց ծառայի որպես երաշխիք:

Սա չպետք է խախտվի կամ փոփոխվի մինչև Աստծո կամքով Հարության ժամը:

Մուհամմադ իբն Աբդ Ալլահի այս փաստաթղթին, որը պարունակում է քրիստոնյաների հետ նրա կնքած ուխտը, և որը ներառում է վերջիններիս նկատմամբ պարտադրված պայմանները, վկա են եղել՝

Աթիք իբն Աբի Քուհաֆահը, Ումար իբն ալ-Խաթաբը, Ութման իբն Աֆֆան, Ալի իբն Աբի Տալիբը, Աբու Դհարը, Աբու ալ-Դարդան, Աբի Հուրայրահը, Աբդ Ալլահ իբն Մասուդը, Աբբաս իբն Աբդ ալ-Մութալիբը, ալ-Ֆադլ իբն ալ-Աբբասը, ալ-Զուբայր իբն ալ-Ավամը, Թալհահ իբն Ուբայադ Ալլահը, Սաադ իբն Մուադհը, Սաադ իբն Ուբադահը, Թումամահ իբն Քայսը, Զայդ իբն Թաբիտը և նրա որդի Աբդ Ալլահը, Հուրքուս իբն Զուհայրը, Զայդ իբն Արքամը, Ուսամահ իբն Զայդը, Ութման իբն Մազուն Ամմարը, Մուսաբ իբն ալ-Զուբայր իբն Ջուբայրը, Աբու ալ-Ալիյահը, Աբդ Ալլահ իբն Ամր իբն ալ-Ասը, Աբու Հուդհայֆահը, Քաաբ իբն Մալիքը, Հասան իբն Թաբիտը, Ջաֆար իբն Աբի Տալիբը, [գրված Մուայիվահ իբն Աբի Սուֆյանի կողմից]:

# ԳԼՈՒԽ 4.
# ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏՆ ԱՇԽԱՐՀԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՀԵՏ

(Քարմել լեռան ձեռագիր)

[Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ]

(թարգմանությունը՝ Ջոն Էնդրյու Մորրոուի)

[Հանուն Աստծո՝ ամենակարեկից, ամենաողորմած:]

Այն գրվել է Մուհամմադի՝ Աստծո Դեսպանորդի, քարոզչի ու դիտորդի կողմից բոլոր մարդկանց համար, [Մուհամմադը], ով կոչված է ճշմարտացիորեն պաշտպանել Աստծուն, և որպես Աստծո ապացույց արևելյան երկրում և նրա արևմուտքում քրիստոնեական կրոնի համար, այդ երկրի արաբների ու ոչ-արաբների, մոտ կամ հեռու գտնվողների, հայտնիների կամ անհայտների համար:

Նրանց համար պատրաստված այս փաստաթուղթը հանդիսանում է հեղինակավոր ուխտ, հայտնի վկայագիր, և վկայություն նրանից, որը պետք է հարգվի և որը պետք է պաշտպանի նրանց:

Նա, ով իսլամ է դավանում, հետևում է դրան, և ով կխախտի այս կտակարանում պարունակվող ուխտը, և դա կխախտի ոչ մուսուլմանների շրջանում և կհակառակվի դրանում իմ պատվիրածին, նա այդպիսով խախտած կլինի Աստծո ուխտը, կդրժի Աստծո երդումը և ուրեմն արհամարհած կլինի Նրա պաշտպանությունը՝ լինի նա սուլթան, թե որևէ մեկը հավատացյալների և մուսուլմանների շրջանում:

Ես պարտավորվում եմ շնորհել դաշինքներ և խոստումներ տալ նրանց, ովքեր խնդրում են ինձ և մուսուլմանների մեջ իմ բոլոր ընտանիքներից, որպեսզի

նրանց տամ Աստծո ուխտը և Նրա խոստումը, և ես դրանք դնեմ Նրա մարգարեների, առաքյալների, ընտրյալների, սրբերի հովանու ներքո, մուսուլմաններից և հավատացյալներից, նրանցից առաջինից և նրանցից վերջինից: Եվ իմ պաշտպանությունը և իմ դաշնագիրը՝ ամենաամուր ուխտը, որ Աստված տվել է ուղարկված մարգարեին կամ մոտ եկած հրեշտակին [կամ միապետին], [մասնավորապես]՝ հնազանդություն պահանջելու, պարտավորություններ տալու և Աստծո ուխտի հարգանքի իրավունք:

Այն, որ ես պաշտպանում եմ նրանց դատավորներին իմ ամրացված սահմաններում իմ ձիերի և մարդկանց, իմ օգնականների և հետևորդների հետ, հավատացյալների միջից, թշնամու շրջանների յուրաքանչյուր շրջանից՝ անկախ նրանից, նրանք հեռու են կամ մոտիկ, խաղաղության կամ պատերազմի ժամանակ ես նրանց վերցնում եմ իմ հովանու ներքո: Ես անվտանգություն եմ շնորհում նրանց եկեղեցիներին, նրանց ուխտագնացության վայրերին, ուր էլ որ լինեն, և որտեղ էլ գտնվեն, լինեն նրանք լեռներում կամ հովիտներում, քարանձավներում կամ բնակեցված շրջաններում, հարթավայրերում կամ անապատում, կամ թե շինություններում. և որ ես պաշտպանում եմ նրանց կրոնը և նրանց ունեցվածքը, որտեղ էլ որ լինեն, և որտեղ էլ գտնվեն ցամաքում կամ ծովում, Արևելքում կամ Արևմուտքում, այն ձևով, որով ես կպաշտպանեմ ինձ, իմ հետևորդներին և հավատացյալների ու մուսուլմանների շրջանում իմ համայնքի ժողովրդին:

Ես նրանց իմ պաշտպանության տակ եմ դնում ցանկացած վնասից կամ կորստից. ազատելու համար նրանց ցանկացած պահանջներից կամ որևէ ծանր պարտականությունից: Ես նրանց թիկունքում եմ՝ անձամբ պաշտպանելով նրանց իմ հետևորդների, իմ օգնականների և իմ կրոնական համայնքի անդամների միջոցով:

Իշխանություն ունենալով նրանց վրա՝ ես պետք է ղեկավարեմ նրանց՝ պաշտպանելով նրանց բոլոր վնասներից և ապահովելով, որ ինչը չի պատահի ինձ և իմ ուղեկիցների հետ, ովքեր ինձ հետ միասին պաշտպանում են այս տրված իշխանությունը, նույն կերպ և ոչ մի վնաս չի պատճառվի նրանց:

Ես նրանցից բացառում եմ պաշարների այն կորուստը, որոնք դաշնագրի մարդկանց պարտավորեցնում է փոխառություն կատարել և հողի տուրք վճարել, բացառությամբ այն բանի, ինչ իրենք անձամբ համաձայն կլինեն տալ: Նրանց չպետք է պարտադրել այս հարցում:

Չի թույլատրվում եպիսկոպոսին հեռացնել իր եպիսկոպոսությունից կամ քրիստոնյային՝ քրիստոնեությունից, վանականին՝ իր վանական կյանքից կամ ուխտավորին՝ իր ուխտագնացությունից կամ ճգնավոր վանականին՝ իր աշտարակից: Չի թույլատրվում ոչնչացնել նրանց եկեղեցիների որևէ մասը, նրանց շենքերի մի մասը վերցնել մզկիթներ կամ մուսուլմանների տներ կառուցելու համար: Ով նման բան կանի, նա կխախտի Աստծո դաշնագիրը, ահնազանդ կլինի Նրա Դեսպանորդին և դավաճանած կլինի աստվածային դաշինքին:

Չի թույլատրվում գլխահարկ կամ որևէ հարկ պարտադրել վանականներին կամ եպիսկոպոսներին, բացառությամբ միայն նրա, ինչը նրանք պատրաստ կլինեն կամովին տալ:

Խոշոր գործերի սեփականատերերի և մարգարիտ որոնողների և նրանց վրա, ովքեր թանկարժեք քարերի, ոսկու և արծաթի համար հանքեր են շահագործում, և նրանց վրա, ովքեր հարուստ և հզոր են, և քրիստոնեություն դավանողների շարքում, գլխահարկը կարող է գերազանցել ոչ ավելի, քան տարեկան տասներկու *դիրհեմն* այնքան ժամանակ, քանի դեռ նրանք այս երկրների բնակիչներ կամ երկրացիներ են և ոչ թե ճանապարհորդներ:

Ճանապարհորդը կամ այն բնակիչը, որի [բնակության] վայրն անհայտ է, պարտավոր չէ վճարել հողի տուրքը կամ գլխահարկը, քանի դեռ նա չի ժառանգել այն հողը, որի վրա կառավարիչն ունի դրամական իրավունք: Նա պետք է վճարի գումարը, ինչպես մյուսները, այնուամենայնիվ, զանձումները չպետք է անարդարացիորեն գերազանցեն իրենց միջոցների [կամ ուժի] չափը:

Ինչ վերաբերում է աշխատուժին, որը սեփականատերերը կիրառում են այդ հողերը մշակելու, դրանք բերրի դարձնելու և դրանցից բերք ստանալու համար, ապա դրանք ավելորդ հարկման ենթակա չեն: Թող նրանք վճարեն նույն ձևով, ինչպես սահմանվեց նմանատիպ այլ հարկատուների համար:

Մուսուլմանական պաշտպանություն վայելող ազատ ոչ մուսուլմանները չպետք է պարտավորվեն մուսուլմանների հետ պատերազմ գնալ՝ նրանց թշնամիների դեմ պայքարելու, նրանց վրա հարձակվելու և նրանց գրավելու համար: Հիրավի, այդպիսի ազատ ոչ մուսուլմանները չպետք է պատերազմեն մուսուլմանների հետ միասին: Հենց այս պարտավորությունից նրանց ազատելու համար է, որ այս դաշնագիրը շնորհվել է նրանց, ինչպես նաև նրանց հավաստիացնել մուսուլմանների կողմից նրանց օգնությունն ու պաշտպանությունը: Նրանք չպետք է պարտավորվեն մուսուլմանների հետ դուրս գալ ընդդեմ նրանց թշնամիների կամ ստիպված լինեն տալ իրենց ձիերը, իրենց զենքերը, քանի դեռ իրենք գործին կամովին նպաստել: Նա, ով այդպես կվարվի, կճանաչվի իր արարքի համար:

Ոչ մի քրիստոնյա չպետք է ստիպողաբար մուսուլման դառնա: *Եվ դուք մի՛ վիճեք Գրքի ժողովրդի հետ, բացի այն միջոցներից, որոնք ավելի լավ են* [29:46]: Նրանք պետք է ծածկվեն գթասրտության թևով: Հեռացրեք յուրաքանչյուր վնաս, որը կարող է հասնել նրանց, որտեղ էլ նրանք գտնվեն

և ցանկացած երկրում, որտեղ նրանք գտնվում են:

Եթե մի քրիստոնյա պետք է հանցանք կամ հարձակում գործի, մուսուլմանները պետք է նրան օգնություն, պաշտպանություն և պահանություն տրամադրեն: Նրանք պետք է ներեն նրա հանցանքը և խրախուսեն իր զոհին հաշտվել նրա հետ՝ հորդորելով ներել նրան կամ փոխհատուցում ստանալ փոխարենը:

Մուսուլմանները չպետք է լքեն քրիստոնյաներին, անտեսեն նրանց և թողնեն նրանց առանց օգնության և աջակցության, քանի որ ես Աստծո անունից նրանց հետ կնքեցի այդ դաշնագիրը, որպեսզի ապահովեմ, որ ցանկացած լավ բան մուսուլմանների հետ պատահելիս, նրանց նս բաժին կհասնի, և ինչ վնաս որ լինի մուսուլմաններին, նույնը և նրանց բաժին ընկնի: Այս դաշնագրի շնորհիվ նրանք ձեռք են բերել անձեռնմխելի իրավունքներ՝ մեր պաշտպանությունը վայելելու, իրենց իրավունքները ցանկացած ոտնահարումից պաշտպանելու համար, որպեսզի նրանք կապված լինեն մուսուլմաններին ինչպես լավ, այնպես էլ վատ ճակատագրով:

Քրիստոնյաները չպետք է ենթարկվեն տառապանքի, չարաշահման՝ կապված այն ամուսնությունների հետ, որոնք նրանք չեն ցանկանում: Մուսուլմանները չպետք է ամուսնանան քրիստոնյա աղջիկների հետ նրանց ծնողների կամքին հակառակ, ոչ էլ պետք է ճնշեն նրանց ընտանիքներին այն դեպքում, եթե նրանք մերժել են իրենց նշանադրության և ամուսնության առաջարկները: Նման ամուսնությունները չպետք է տեղի ունենան առանց նրանց ցանկության և համաձայնության և առանց նրանց հավանության և համաձայնության:

Եթե մուսուլմանը որպես կին է վերցնում քրիստոնյա կնոջը, ապա նա պետք է հարգի նրա քրիստոնեական հավատալիքները: Նա պետք է ազատություն տա նրան՝ լսելու իր [հոգևորական] վերադասներին, ինչպես ինքն է

ցանկանում և հետևել իր սեփական կրոնի ուղուն: Ցանկացած ոք, ով, չնայած այս կարգին, կստիպի իր կնոջը գործել իր դավանանքին հակառակ ցանկացած առումով, նա խախտած կլինի Աստծո դաշինքը և բաց ապստամբություն կբարձրացնի Նրա Դեսպանորդի դաշնագրի դեմ, և Աստված նրան ինքնակոչների շարքը կդասի:

Եթե քրիստոնյաները դիմեն ձեզ՝ մուսուլմանների օգնությունն ու աջակցությունը խնդրելու համար, որպեսզի վերանորոգեն իրենց եկեղեցիներն ու վանքերը կամ իրենց կրոնի գործերին վերաբերող հարցերը կազմակերպեն, ապա նրանք պետք է օգնեն և աջակցեն նրանց: Այնուամենայնիվ, նրանք չպետք է անեն դա՝ նպատակ ունենալով ստանալ որևէ վարձատրություն: Ընդհակառակը, նրանք պետք է անեն այդ կրոնը վերականգնելու համար՝ ելնելով Աստծո Դեսպանորդի դաշնագրի հանդեպ հավատարմությունից, մաքուր նվիրատվությամբ և որպես Աստծո և Նրա Դեսպանորդի առջև որպես գովաբանության արժանի արարք:

Նրանց և իրենց թշնամիների միջև պատերազմի գործերում մուսուլմանները ոչ մի քրիստոնյա չպետք է վերցնեն որպես Դեսպանորդ, հետախույզ, ուղեկցող կամ լրտես կամ պատերազմի որևէ այլ պարտականություն կատարելու համար: Նա, ով նրանցից մեկին կպարտավորեցնի նման բան անել, կխախտի Աստծո իրավունքները, ապստամբ կլինի Նրա Դեսպանորդի դեմ և ինքն իրեն դուրս կդնի Նրա կտակարանից: Ոչինչ չի թույլատրվում մուսուլմանին [քրիստոնյաների առնչությամբ] այս հրամանագրերին ենթարկվելուց բացի, որոնք Մուհամմադ իբն Աբդ Ալլահը՝ Աստծո Դեսպանորդը, անցկացրեց հօգուտ քրիստոնյաների կրոնի:

Սրանք են այն պայմանները, որ Մուհամմադը՝ Աստծո Դեսպանորդը, դրեց քրիստոնեական համայնքի վրա՝

կապված նրանց կրոնի և համայնքի հետ: Նրանք պետք է ամուր կառչեն այս ուխտից և հարգեն այն, ինչին նրանք համաձայնել են:

Ի թիվս այլ բաների՝ նրանցից և ոչ մեկը չի կարող գործել որպես հետախույզ, լրտես, կամ բացահայտ կամ գաղտնի կերպով, պատերազմի թշնամու կողմից մուսուլմանի դեմ: Նրանցից ոչ մեկը չպետք է պատսպարի իրենց տներում մուսուլմանների թշնամիներին, որտեղից նրանք կարող էին սպասել այն պահին, որպեսզի սկսեն հարձակումը: Թող որ այս [մուսուլմանների] թշնամիներին երբեք թույլ չտրվի կանգ առնել իրենց շրջաններում, լինի դա իրենց գյուղերում, աղոթատներում կամ որևէ այլ վայրում, որը պատկանում է իրենց հավատակիցներին: Նրանք չպետք է որևէ աջակցություն ցուցաբերեն մուսուլմանների պատերազմի թշնամիներին՝ զինելով նրանց զենքով, ձիերով, տղամարդկանցով և որևէ այլ բանով, ոչ էլ պետք է լավ վերաբերվեն նրանց: Նրանք պետք է երեք օր և երեք գիշեր հյուրընկալեն ցանկացած մուսուլմանի, որ կանգ կառնի նրանց մոտ իր կենդանու հետ: Որտեղ էլ գտնվեն և ուր էլ որ գնան, նրանք պետք է առաջարկեն նրանց նույն կերակուրը, որով իրենք են ապրում, այնուամենայնիվ, առանց պարտավորված լինելու այլ անհանգստացնող կամ ծանր բեռ կրել:

Եթե մուսուլմանը կարիք ունենա թաքնվել նրանց տներից կամ աղոթատեղերից մեկում, ապա նրանք պետք է նրան հյուրընկալեն, օգնություն առաջարկեն և տրամադրեն իրենց կերակուրն այն ամբողջ ընթացքում, երբ նա կլինի նրանց մեջ, նաև ամեն ջանք գործադրելով նրան թաքցնելու համար և կանխելով, որպեսզի թշնամին չգտնի նրան՝ միաժամանակ ապահովելով նրա բոլոր կարիքները:

Նա, ով կհակառակվի կամ կփոփոխի այս հրամանագրի որոշումները, դուրս կնետվի Աստծո և Նրա Դեսպանորդի միջև դաշինքից:

Թող որ բոլորը պահեն թագավորների, վանականների և Գրքի ժողովուրդներից քրիստոնյաների հետ կնքված պայմանագրերը և դաշինքները, և որոնք ես ինքս եմ կնքել, և յուրաքանչյուր այլ պարտավորություն, որ յուրաքանչյուր մարգարե իր ազգի հետ է պայմանավորվել, որպեսզի նրանց երաշխավորի ապահովություն և վստահելի պաշտպանություն և նրանց ծառայի որպես երաշխիք:

Սա չպետք է խախտվի կամ փոփոխվի մինչև Աստծո կամքով Հարության ժամը և աշխարհի վերջը:

Այս փաստաթղթին, որը գրվել է Մուհամմադի՝ Աստծո Դեսպանորդի կողմից այն քրիստոնյաների համար, ովքեր գրել էին իրեն և խնդրել նրանից այդ ուխտը, վկա են եղել՝

Աբու Բաքր ալ-Սիդիքը, Ումար իբն ալ-Խաթաբը, Ութման իբն Աֆֆան, Ալի իբն Աբի Տալիբը, Մուայիվահ իբն Աբի Սուֆյանը, Աբու ալ-Դարդան, Աբու Դհարը, Աբու Հուրայրահը, Աբդ Ալլահ իբն Մասուդը, Աբդ Ալլահ իբն ալ-Աբբասը, Համզահ իբն Աբդ ալ-Մութալիբը, Զայդ իբն Թաբիտը, Աբդ Ալլահ իբն Զայդը, Հարֆուս իբն Զայդը, ալ-Զուբայր իբն ալ-Ավամը, Սաադ իբն Մուադիը, Թաբիտ իբն Քայսը, Ուսամահ իբն Զայդը, Ութման իբն Մազունը, Աբդ Ալլահ իբն Ամր ալ-Ասը, Աբու Ռաբիյահը, Հասան իբն Թաբիտը, Ջաֆար իբն Աբի Տալիբը, ալ-Ֆադլ իբն ալ-Աբբասը, Թալհահ իբն Աբդ Ալլահը, Սաադ իբն Ուբադահը, Զայդ իբն Արքամը, Սահլ իբն Բայդան, Դաուդ իբն Ջուբայրը, Աբու ալ-Ալիյահը, Աբու Աիրիֆահը, Իբն Ուսայրը, Հաշիմ իբն Ասիյահը, Ամար իբն Յասիրը, Քաաբ իբն Մալիքը, Քաաբ իբն Քաաբը:

Թող Աստված գոհանա բոլոր նրանցով:

Գրված է Մուայիվահ իբն Աբի Սուֆյանի կողմից, ինչպես որ թելադրվել է Աստծո Դեսպանորդի կողմից, երկուշաբթի օրը, Մադինայում Հիջրայի չորրորդ տարվա հենց առաջին չորս ամիսների ավարտին:

Աստված բավարարում է որպես վկա այն բանի համար,

ինչ կա այս փաստաթղթում:
Փառք Աստծուն՝ աշխարհների Տիրոջը:

## ԳԼՈՒԽ 5.
## ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏՆ ԱՇԽԱՐՀԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՀԵՏ
(Կահիրեի ձեռագիր)

[Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ]

(թարգմանությունը՝ Ջոն Էնդրյու Մորոուի)

Հանուն Աստծո՝ Արարչի, կենդանի, խոսող, Նա, ով մնում է արարչության ոչնչացումից հետո:

Սա ուխտի պատճենն է, որը գրվել է Մուհամմադ իբն-Աբդ Ալլահ իբն-Աբդ ալ-Մութալիբի կողմից բոլոր քրիստոնյաների համար:

Ուխտի պատճենը

Աստծո այս ուխտը հրամայվել է գրել Մուհամմադ իբն Աբդ Ալլահ իբն Աբդ ալ-Մութալիբի՝ Աստծո Դեսպանորդի կողմից, թող Աստծո խաղաղությունն ու օրհնությունները լինեն նրա և նրա ընտանիքի, բոլոր քրիստոնյաների և բոլոր վանականների վրա, թող պահպանի և պաշտպանի նրանց, քանի որ նրանք Աստծո վստահությունն են Նրա արարածների մեջ, որպեսզի ուխտը ապացույց դառնա նրանց դեմ և Աստծո դեմ ոչ մի պահանջ չի լինի Դեսպանորդից հետո: Նա դա իրենից և նրանց համար պաշտպանություն էր դարձնում Աստծո իշխանությամբ, քանի որ Աստված ամենակարող և իմաստուն է: Այն գրվել է Առյուծի և Նրա կոչման մարդկանց կողմից բոլոր նրանց համար, ովքեր քրիստոնեական կրոն են դավանում արևելյան երկրներում և նրա Արևմուտքում, մոտիկ և հեռու, լինեն նրանք արաբներ կամ ոչ արաբներ, հայտնիներ կամ

անհայտներ, որպես ուխտ նրա կողմից, արդարությունը և ավանդույթը պահպանելու համար:

Նա, ով հետևում է դրան, պահում է իր իսլամը, արժանի է իր կրոնին: Նա, ով խախտում է այն և վտանգում է այն ուխտը, որը պատվիրվել է Աստծո Դեսպանորդի կողմից, և փոխում է այն, և խախտում է պատվիրվածը, այդպիսով մերժում է Աստծո ուխտը, ժխտում է Աստծո երդումը, արհամարհում է իր կրոնը և արժանի է Նրա նզովքին, լինի նա սուլթան, թե որևէ մեկը հավատացյալների և մուսուլմանների շրջանում:

Ես սկսեցի՝ հանձն առնելով ուխտը, դաշինքներ և խոստումներ տվեցի նրանց, ովքեր խնդրեցին դրանք ինձնից և իմ ամբողջ մուսուլմանական համայնքի կողմից: Ես նրանց տվեցի Աստծո ուխտը և Նրա խոստումը և ժամանակի ընթացքում դրանք դրեցի բոլոր հավատացյալների և մուսուլմանների միջից Նրա մարգարեների, ընտրյալների, ընկերների հովանու ներքո: Իմ պաշտպանությունը և իմ անվտանգությունը ներկայացնում են ամենաամուր ուխտը, որ Աստված՝ ամենափառաբանվածը, տվել է ճշմարտությամբ ուղարկված մարգարեին՝ հնազանդություն պահանջելու, պարտավորություններ տալու և ուխտը հարգելու համար:

Աստծո ուխտն այն է, որ ես պետք է պաշտպանեմ նրանց երկիրը, նրանց վանքերը իմ զորությամբ, իմ ձիերով, մարդկանցով, իմ զենքով, իմ ուժով և իմ մուսուլման հետևորդներով ցանկացած շրջանում, հեռու կամ մոտիկ, և որ ես պետք է պաշտպանեմ նրանց գործունեությունը: Ես անվտանգություն եմ շնորհում նրանց, նրանց եկեղեցիներին, նրանց գործերին, նրանց երկրպագության տներին, նրանց վանականների վայրերին, նրանց ուխտավորների վայրերին, որտեղ էլ գտնվեն, լինեն նրանք լեռներում կամ հովիտներում, քարանձավներում կամ բնակավայրերում, հարթավայրերում կամ անապատում, և

որ ես պետք է պաշտպանեմ նրանց համայնքը, նրանց հավատը և նրանց կրոնը, որտեղ էլ որ գտնվեն Արևելքում կամ Արևմուտքում, ծովում կամ ցամաքում, այն նույն ձևով, որով ես կպաշտպանեմ ինքս ինձ, իմ շրջապատին և իմ համայնքի մարդկանց մուսուլմանների շրջանում:

Ես նրանց դնում եմ իմ պաշտպանության, իմ անվտանգության և ամեն պահի իմ վստահության ներքո: Ես նրանց պաշտպանում եմ ցանկացած վնասից, կորստից կամ հատուցումներից: Ես նրանց թիկունքում եմ՝ պաշտպանելով նրանց յուրաքանչյուր թշնամուց կամ նրանցից, ովքեր ցանկանում են նրանց վնաս պատճառել: Ես ինքս ինձ զոհաբերում եմ նրանց համար իմ օգնողների, հետևորդների և իմ համայնքի մարդկանց միջոցով, քանի որ նրանք իմ հոտն են և իմ պաշտպանության տակ գտնվող մարդիկ են, ես ընդլայնում եմ իմ իշխանությունը, իմ խնամքը և իմ պաշտպանությունը նրանց հանդեպ յուրաքանչյուր վնասից, որպեսզի դա նրանց չսպառնա: Ոչ մի վնաս նրանց չի հասնի, քանի դեռ չի հասել իմ ուղեկիցներին, ովքեր [այնտեղ]՝ պաշտպանելու են նրանց և աջակցելու իսլամին:

Ես նրանցից հեռացնում եմ հարկերից և վարկերից ստացվող վնասը Դաշնագրի մարդկանց համար նախատեսված պաշարներում, բացառությամբ այն բանի, ինչ իրենք են համաձայնել տալ: Այս հարցում նրանց չպետք է պարտադրել կամ անարդացիորեն վերաբերվել:

Չի թույլատրվում եպիսկոպոսին հեռացնել եպիսկոպոսությունից, վանականին՝ վանական կյանքից, քրիստոնյային՝ իր քրիստոնեությունից, ճգնավորին՝ իր աշտարակից կամ ուխտավորին՝ իր ուխտագնացությունից: Չի թույլատրվում քանդել նրանց եկեղեցիների կամ նրանց ձեռնարկությունների որևէ մասը կամ նրանց շենքերի մի մասը վերցնել մզկիթներ կամ հավատացյալ մուսուլմանների տներ կառուցելու համար: Ով նման բան

կանի, նա կխախտի Աստծո ուխտը, անհնազանդ կլինի Նրա Դեսպանորդին և կշեղվի Նրա աստվածային դաշինքից:

Չի թույլատրվում գլխահարկ կամ որևէ տեսակի հողահարկ պարտադրել վանականներին, եպիսկոպոսներին կամ նրանց մեջ այն երկրպագողներին, ովքեր նվիրումով կրում են բրդյա հագուստ կամ միայնակ ապրում են լեռներում կամ մարդկային ներկայությունից մեկուսացված այլ շրջաններում:

Գլխահարկը կկիրառվի այն քրիստոնյաների հանդեպ, ովքեր հոգևորական չեն, բացառությամբ վանականի և ուխտավորի, տարեկան չորս *դիրհեմի* կամ ոչ թանկարժեք թիկնոցի չափով: Նա, ով չունի գումար կամ սնունդ իրեն կերակրելու համար, մուսուլմանները պետք է նրան օգնեն գանձարանում պահվող խնայողությունների միջոցով: Եթե նրանք կդժվարանան սննդի ապահովման հարցում, մուսուլմանները նույնպես կօգնեն նրանց, պայմանով, որ նրանք այն կամովին ընդունեն:

Թող որ հողի հարկը ցամաքով կամ ծովով կատարվող մեծ գործարքների, մարգարիտ որոնելու, թանկարժեք քարերի, ոսկու և արծաթի արդյունահանման կամ քրիստոնեական հավատը դավանողների մեջ հարուստների վրա, չգերազանցի տարեկան տասներկու *դիրհեմը* [*ֆիդդահ*], այնքան ժամանակ քանի դեռ նրանք այս երկրների բնակիչներ և երկրացիներ են:

Թող ոչ մի նման բան չպահանջվի այն ճանապարհորդներից, ովքեր երկրի բնակիչներ չեն կամ անցորդներ են, ում բնակության երկիրն անհայտ է: Չպետք է լինի մյուսների համար հողահարկի հետ միասին գլխահարկ, քան նրանց համար, ովքեր ունեն հողեր, ինչպես և այն հողատերերի համար, որոնց նկատմամբ կառավարիչն իրավունք ունի: Նրանք հարկեր պետք է վճարեն, ինչպես մյուսներն են վճարում դրանք, այնուամենայնիվ, գանձումներն անարդարացիորեն չպետք

է գերազանցեն նրանց միջոցների չափը:

Ինչ վերաբերում է աշխատուժին, որ սեփականատերերը կիրառում են այդ հողերը մշակելու, դրանք բերրի դարձնելու և դրանցից բերք ստանալու համար, ապա դրանք ավելորդ հարկման ենթակա չեն: Թող նրանք վճարեն նույն ձևով և արդարացիորեն այն, ինչ սահմանվեց այլ նմանատիպ հարկատուների համար:

Մեր պաշտպանության տակ գտնվող մարդիկ [*ահլ ալ-զիմմահ*] չպետք է պարտավոր լինեն պատերազմ գնալ մուսուլմանների հետ, որպեսզի պայքարեն նրանց թշնամիների դեմ և հարձակվեն նրանց վրա: Հիրավի, մեր պաշտպանության տակ գտնվող մարդիկ [*ահլ ալ-զիմմահ*] չպետք է ներգրավվեն պատերազմում: Հենց այդ պարտավորությունից նրանց ազատելու համար է, որ այս դաշնագիրը շնորհվել է նրանց, ինչպես նաև նրանց հավաստիացնել մուսուլմանների օգնության ու պաշտպանության մեջ: Նրանք չպետք կաշկանդված է լինեն որևէ մուսուլմանի հարմարություններ տրամադրել զենքի կամ ձիերի տեսքով պատերազմի դեպքում, որի ժամանակ մուսուլմանները կհարձակվեն իրենց թշնամիների վրա, մինչև որ իրենք կամովին չնպաստեն գործին: Եվ այն, ինչ մուսուլմանները փոխ են վերցրել, երաշխավորվելու է [պետական] գանձարանի կողմից, մինչև որ չվերադարձվի նրանց: Եթե նրանք մահանան կամ վնասվեն, [պետական] գանձարանը դրամական փոխհատուցում կտրամադրի:

Ոչ ոքի, ով դավանում է քրիստոնեական կրոնը, չպետք է պարտադրվի մտնել իսլամ: *Եվ դուք մի՛ վիճեք Գրքի մարդկանց հետ, բացի այն միջոցներից, որոնք ավելի լավ են* [29:46]: Նրանք պետք է ծածկված լինեն գթասրտության թևով, և այն բոլոր վնասները, որոնք կարող են հասնել դրանց, որտեղ էլ որ գտնվեն, և որտեղ էլ որ լինեն, պետք է հեռու մղվեն:

Եթե մի քրիստոնյա պետք է հանցանք կամ հարձակում գործի, մուսուլմանները պետք է նրան օգնություն, պաշտպանություն և պահպանություն տրամադրեն, ինչպես նաև նրա փոխարեն տուգանք մուծեն: Նրանք պետք խրախուսեն նրա և իր զոհի միջև հաշտությանը, օգնեն և փրկեն նրան:

Մուսուլմանները չպետք է լքեն նրան կամ թողնեն նրան առանց օգնության և աջակցության, քանի որ ես նրանց տվել եմ Աստծո ուխտը, որը պարտադիր է մուսուլմանների համար:

Շնորհիվ այս դաշնագրի՝ նրանք ձեռք են բերել անձեռնմխելի իրավունքներ՝ մեր պաշտպանությունը վայելելու, իրենց իրավունքները ցանկացած ոտնահարումից պաշտպանելու համար, և դրանք չպետք է վիճարկվեն, մերժվեն կամ անտեսվեն, որպեսզի նրանք կապված լինեն մուսուլմանների հետ թե՛ լավ և թե վատ ճակատագրի դեպքում:

Քրիստոնյաների աղջիկները չպետք է բռնության միջոցով ենթարկվեն տառապանքի՝ կապված ամուսնությունների հետ, որ նրանք չեն ցանկանում: Մուսուլմանները չպետք է ամուսնանան քրիստոնյա աղջիկների հետ նրանց ծնողների կամքին հակառակ, ոչ էլ պետք է ճնշեն նրանց ընտանիքներին այն դեպքում, երբ նրանք մերժեն նշանադրության և ամուսնության իրենց առաջարկները: Նման ամուսնությունները չպետք է տեղի ունենան առանց նրանց ցանկության և համաձայնության և առանց նրանց հավանության և թույլատվության:

Եթե մուսուլմանը կին է առնում քրիստոնյա կնոջը, ապա նա պետք է հարգի նրա քրիստոնեական հավատալիքները: Նա պետք է ազատություն տա նրան՝ լսելու իր [հոգևորական] վերադասներին, ինչպես ինքն է ցանկանում և հետևել իր սեփական կրոնի ուղուն: Ցանկացած ոք, ով, չնայած այս կարգին, կստիպի իր կնոջը գործել իր

դավանանքին հակառակ ցանկացած առումով, նա խախտած կլինի Աստծո դաշինքը և և Նրա Դեսպանորդի խոստումը, և նա մեր կողմից խաբեբաների մեջ կդասվի:

Եթե քրիստոնյաները դիմեն ձեզ՝ մուսուլմանների օգնությունն ու աջակցությունը խնդրելու համար, որպեսզի վերանորոգեն իրենց եկեղեցիներն ու վանքերը կամ իրենց կրոնի գործերին վերաբերող հարցերը կազմակերպեն, ապա սրանք [մուսուլմանները] պետք է օգնեն և աջակցեն նրանց: Այնուամենայնիվ, նրանք չպետք է անեն դա՝ նպատակ ունենալով ստանալ որևէ վարձատրություն կամ պարտք: Ընդհակառակը, նրանք պետք է անեն այդ կրոնը վերականգնելու համար՝ ելնելով Աստծո Դեսպանորդի դաշնագրի հանդեպ հավատարմությունից, մաքուր նվիրատվությամբ և որպես Աստծո և Նրա Դեսպանորդի առջև որպես գովաբանության արժանի արարք:

Նրանց և իրենց թշնամիների միջև պատերազմի գործերում մուսուլմանները ոչ մի քրիստոնյա չպետք է վերցնեն որպես Դեսպանորդ, հետախույզ, ուղեկցող կամ լրտես կամ պատերազմի որևէ այլ պարտականություն կատարելու համար: Նա, ով նրանցից մեկին կպարտավորեցնի նման բան անել, անարդար կգտնվի Աստծո հանդեպ, անհնազանդ Նրա Դեսպանորդի հանդեպ և ինքն իրեն դուրս կնետի Նրա կրոնից: Ոչինչ չի թույլատրվում մուսուլմանին [քրիստոնյաների առնչությամբ] այս հրամանագրերին ենթարկվելուց բացի, որոնք Մուհամմադ իբն Աբդ Ալլահը՝ Աստծո Դեսպանորդը, անցկացրեց հօգուտ քրիստոնյաների կրոնի:

Ես նաև պայմաններ եմ դնում [քրիստոնյաների վրա], և ես պահանջում եմ, որ նրանք խոստանան կատարել և բավարարել դրանք որպես իրենց կրոնի պատվիրաններ: Ի թիվս այլ բաների՝ նրանցից և ոչ մեկը չի կարող գործել որպես հետախույզ, լրտես, կամ բացահայտ կամ գաղտնի կերպով, պատերազմի թշնամու կողմից մուսուլմանի դեմ:

Նրանցից ոչ մեկը չպետք է պատսպարի իրենց տներում մուսուլմանների թշնամիներին, որտեղից նրանք կարող էին սպասել այն պահին, որպեսզի սկսեն հարձակումը: Թող որ այս [մուսուլմանների] թշնամիներին երբեք թույլ չտրվի կանգ առնել իրենց շրջաններում, լինի դա իրենց գյուղերում, աղոթատներում կամ որևէ այլ վայրում, որը պատկանում է իրենց հավատակիցներին: Նրանք չպետք է որևէ աջակցություն ցուցաբերեն մուսուլմանների պատերազմի թշնամիներին՝ զինելով նրանց զենքով, ձիերով, տղամարդկանցով և կոչ անեն ավելորդ բաների: Նրանք չպետք է անհանգստացնեն նրանց, և նրանք պետք է պատվեն այնքան ժամանակ, քանի դեռ նրանք հետևում են իրենց կրոնին և հոգում են իրենց դաշնագրի համար: Նրանք պետք է տարամադրեն երեք օր և երեք գիշեր մուսուլմաններին, երբ նրանք կանգ կառնեն նրանց մոտ: Որտեղ էլ գտնվեն և ուր էլ որ գնան, նրանք պետք է առաջարկեն նրանց նույն կերակուրը, որով իրենք են ապրում, այնուամենայնիվ, առանց պարտավորված լինելու դիմանալ այլ անհանգստացնող կամ ծանր բեռներին:

Եթե մուսուլմանը կարիք ունենա թաքնվել նրանց տներից կամ աղոթատեղերից մեկում, ապա նրանք պետք է նրան հյուրընկալեն, օգնություն տրամադրեն և ապահովեն իրենց կերակուրով այն ամբողջ ընթացքում, երբ նա կլինի նրանց մեջ, նաև ամեն ջանք գործադրելով նրան թաքցնելու համար և կանխելով, որպեսզի թշնամին չգտնի նրան՝ միաժամանակ ապահովելով նրա բոլոր կարիքները:

Նա, ով կհակառակվի կամ կփոփոխի այս հրամանագրի որոշումները, դուրս կնետվի Աստծո և Նրա Դեսպանորդի միջև դաշինքից:

Թող որ բոլորը պահեն վանականների հետ կնքված պայմանագրերը և դաշինքները, և որոնք ես ինքս եմ կնքել, որտեղ էլ, որ նրանք լինեն:

Աստծո Դեսպանորդը, թող Աստծո խաղաղությունն ու օրհնությունները լինեն նրա վրա, պետք է հարգի այն, ինչ շնորհել է իր իշխանությամբ և ամբողջ մուսուլմանների վրա, պահպանելու նրանց և ողորմածություն ունենալու նրանց վրա մինչև վերջ, մինչև [Հարության] ժամը գա, և աշխարհի վերջը լինի:

Ով այսքանից հետո անարդարացի է [քրիստոնյա] ենթակայի [*զիմմիի*] նկատմամբ, խախտում է ուխտը և մերժում է այն, ես կդառնամ նրա թշնամին Դատաստանի օրը բոլոր մուսուլմանների մեջ:

Որպես վկայություն այս ուխտի մասին, որը գրվել է Մուհամմադի՝ Աստծո Դեսպանորդի կողմից, թող Աստծո խաղաղությունն ու օրհնությունները լինեն նրա վրա, բոլոր քրիստոնյաների համար, որոնց համար նա պայմաններ է գրել դրանում և ում համար գրել է հետևյալ ուխտը, երեսուն վկա է եղել՝

Աբու Բաքր ալ-Սիդիք, Ումար իբն ալ-Խաթաբ, Ութման իբն Աֆան, Ալի իբն Աբի Տալիբ, Աբու Դհար, Աբու ալ-Դարդա, Աբու Հուրայրահ, Աբդ Ալլահ իբն Մասուդ, ալ-Աբբաս իբն Աբդ ալ-Մալիք, ալ-Ֆադլ իբն ալ-Աբբաս ալ-Զահրի, Տալհահ իբն Աբդ Ալլահ, Սաադ իբն Մուադհ, Սաադ իբն Ուբադահ, Թաբիտ իբն Քայս, Յազիդ իբն Թալիթ, Աբդ Ալլահ իբն Յազիդ, Ֆարսուս իբն Քասիմ իբն Բադր իբն Իբրահիմ, Ամմար իբն Յազիդ, Սահլ իբն Տամիմ, Աբդ ալ-Ազիմ իբն ալ-Նաջաշի, [տարբեր ձեռագիր] Աբդ ալ-Ազիմ իբն Հուսեյն, Աբդ Ալլահ իբն Ամր բեն ալ-Աս, Ամմար իբն Յասիր, Մուազիմ իբն Մուսա, Հասան իբն Թաբիտ, Աբու Հանիֆահ, Ուբայդ իբն Մանսուր, Հաշիմ իբն Աբդ Ալլահ, Աբու ալ-Ազար, Հիշամ իբն Աբդ ալ-Մութալիբ:

Ալի իբն Աբի Տալիբը, թող Աստված գոհանա նրանով, գրեց այս ուխտը, իսկ ձեռագիրը գրված էր մի կտոր կաշվի վրա, որը փոքր չէր: Այն մնաց սուլթանի իշխանության տակ և կնքվեց Մարգարեի կողմից, թող խաղաղություն և

օրհնություններ լինեն նրա վրա: Թող բոլոր փառաբանություններն Աստծուն լինեն:

Այս օրհնյալ գիրքն ավարտվեց երկուշաբթի օրը, օրհնյալ Բաունայի վերջին ամսում, մեր Նահատակ վարպետների տարում, մաքուր անձինք, մեղմ, բավարարված, թող Աստված շնորհի մեզ նրանց բարեխոսությունը և թող նրանց բարեխոսությունը մեզ հետ լինի: Ամեն:

Սա համապատասխանում է արաբական *Հիջրայի* 945-րդ տարվա Մուհամարի սուրբ ամսվա 27-ին: Թող Աստված նրա վերջը բարին կատարի: Ամեն:

Այս օրհնված գիրքը պատկանում է մեծ հոգուն, տիրոջը, առաջնորդին, ավագին, գիտնականին, Սումանին, մեծության աղբյուր Ֆադլ Աստծո որդուն, թող որ Աստված հանգիստ պահի նրա հոգին խաղաղության մեջ, ով հայտնի է որպես ալ-Բարալուսի:

Այս խոսքերի գրողը՝ խոնարհ, մեղքերով և սխալներով լի, խնդրում է եղբայրներին, ովքեր կարդում են այս խոսքերը [բառացիորեն՝ տառեր], նշել դրանք իրենց աղոթքներում, և Մեսիան նրանց կհատուցի հարյուր վաթսուներեք անգամ:

## ԳԼՈՒԽ 6.
## ՄՈՒՀԱՄՄԱԴ ՄԱՐԳԱՐԵԻ ՈՒԽՏՆ ԱՍՈՐԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԵՐԻ ՀԵՏ

[Մուհամմադ Մարգարեի հեղինակությամբ]

[թարգմանությունը՝ Ջորջ Դեյվիդ Մալեքի]

[խմագրմամբ՝ Ջոն Էնդրյու Մորոուի]

Աստված ինձ տեսիլքում ասաց, թե ինչ պետք է անեմ, և ես հաստատում եմ Նրա հրամանը՝տալով իմ հանդիսավոր խոստումը՝ պահպանելու այս պայմանագիրը:

Իսլամի հետևորդներին ասում եմ. «Կատարե՛ք իմ հրամանը, պաշտպանե՛ք և օգնե՛ք քրիստոնեական ժողովրդին մեր այս երկրի իրենց սեփական հողում:

Խաղաղության մեջ թողե՛ք նրանց երկրպագության վայրերը. օգնե՛ք և աջակցե՛ք նրանց գլխավորին և նրանց քահանաներին, երբ օգնության կարիք ունենան, լինի դա լեռներում, անապատում, ծովում կամ տանը:

Թողե՛ք նրանց ողջ ունեցվածքը իրենց, լինեն դրանք տներ կամ այլ ունեցվածք, մի՛ ոչնչացրեք նրանց ունեցվածքի ոչ մի բան, իսլամի հետևորդները չպետք է վնասեն կամ շահագործեն այս ազգից որևէ մեկին, որովհետև քրիստոնյաները իմ հպատակներն են, ինձ հարկ են տալիս և պետք է օգնեն մուսուլմաններին:

Ոչ մի հարկ, բացի այն, ինչ համաձայնեցված է, նրանցից չպետք է հավաքվի, նրանց եկեղեցական շենքերը թող մնան այնպես, ինչպես կան, դրանք չպետք է փոխվեն, նրանց քահանաներին թույլատրվելու է սովորեցնել և երկրպագել իրենց սեփական ձևով. քրիստոնյաներն ունեն երկրպագության լիակատար ազատություն իրենց եկեղեցիներում և տներում:

Նրանց եկեղեցիներից ոչ մեկը չպետք է քանդվի կամ մզկիթի վերածվի, բացառությամբ քրիստոնյաների համաձայնությամբ և ազատ կամքի: Եթե որևէ մեկը չհնազանդվի այս հրամանին, Աստծո և Նրա Մարգարեի զայրույթը նրա վրա կլինի:

Քրիստոնյաների վճարած հարկը պետք է օգտագործվի իսլամի ուսմունքը խթանելու համար և կուղարկվի *բայթ ալ-մալի* գանձարան: Հասարակ մարդը կվճարի մեկ դինար, բայց վաճառականներն ու մարդիկ, ովքեր տիրում են ոսկու և արծաթի հանքերի և հարուստ են, պետք է վճարեն տասներկու դինար: Օտարականներից և մարդկանցից, ովքեր չունեն տներ կամ այլ բնակվելու վայրեր, չպետք է հարկեր գանձվեն: Եթե մի մարդ ունեցվածք է ժառանգում, նա պետք է վճարի ամրագրված գումար *բայթ ալ-մալի* գանձարանին:

Քրիստոնյաները պարտավոր չեն պատերազմել իսլամի թշնամիների դեմ, բայց եթե թշնամին հարձակվում է քրիստոնյաների վրա, ապա մուսուլմանները չպետք է մերժեն իրենց օգնությունը, այլ անհրաժեշտության դեպքում նրանց ձիեր ու զենքեր պետք է տան, իսկ եթե դրա կարիքը ունենան, նաև պաշտպանեն նրանց արտաքին չարիքներից և խաղաղություն պահպանեն նրանց հետ: Քրիստոնյաներին չպետք է պարտադրեն մուսուլման դառնալ, մինչև որ Աստծո կամքը նրանց հավատացյալներ չի դարձնի:

Մուսուլմանները չպետք է ստիպեն քրիստոնյա կանանց իսլամ ընդունել, բայց եթե իրենք ցանկանան ընդունել այն, մուսուլմանները բարի կլինեն նրանց հանդեպ:

Եթե քրիստոնյա կինն ամուսնացած է մուսուլմանի հետ և չի ցանկանում իսլամ ընդունել, ապա նա իրավունք ունի իր եկեղեցում երկրպագելու իր կրոնական համոզմունքի համաձայն, և ամուսինը չպետք է չարակամորեն վերաբերվի նրան իր կրոնի պատճառով:

Եթե որևէ մեկը չի հնազանդվի այս հրամանին, նա այդպիսով չի հնազանդվի Աստծուն և Նրա Մարգարեին և մեղավոր կլինի մեծ հանցանքի համար:

Եթե քրիստոնյաները ցանկանան եկեղեցի կառուցել, նրանց մուսուլման հարևանները պետք է օգնեն նրանց: Դա պետք է արվի, քանի որ քրիստոնյաները հնազանդվել են մեզ, եկել են մեզ մոտ և աղաչել խաղաղության և ողորմության համար:

Եթե քրիստոնյաների մեջ կա մեծ և ուսումնական մարդ, մուսուլմանները պետք է պատվեն նրան և չնախանձեն նրա մեծությանը:

Եթե որևէ մեկը անարդար է և անիրավ քրիստոնյաների հանդեպ, ապա նա մեղավոր կլինի Աստծո Մարգարեին չհնազանդվելու համար:

Քրիստոնյաները չպետք է ապաստան տրամադրեն իսլամի թշնամուն կամ նրան ձի, զենք կամ որևէ այլ օգնություն տրամադրեն:

Եթե որևէ մուսուլման կարիք ունենա, քրիստոնյան երեք օր և գիշեր պետք է լինի նրան հյուրընկալողը և ապաստան տա նրան իր թշնամիներից:

Բացի այդ, քրիստոնյաները պետք է պաշտպանեն մուսուլման կանանց և երեխաներին և նրանց չհանձնեն թշնամուն կամ նրանց չբացահայտեն տեսնելու համար:

Եթե քրիստոնյաները չկատարեն այդ պայմանները, ապա նրանք կորցրած կլինեն իրենց պաշտպանության իրավունքը, և պայմանագիրը առոչինչ է:

Այս փաստաթուղթը պետք է վստահվի քրիստոնյա ղեկավարին և նրանց եկեղեցու գլխավորին՝ անվտանգ պահելու համար:

Ստորագրություններ.

Աբու Բաքր ալ-Սիդիք, Ումար իբն ալ-Խաթաբ, Ութման իբն Աֆան, Ալի իբն Աբի Տալիբ, թող խաղաղություն լինի նրա վրա, Մուավիյա իբն Աբի Սուֆյան, Աբու Դարդա, Աբու

Դիար, Աբու Բարաի, Աբդ Ալլահ իբն Մասուդ, Աբդ Ալլահ իբն Աբբաս, Համզաի իբն ալ-Մութթալիբ, ալ-Ֆադլ իբն ալ-Աբբաս, ալ-Զուբայր իբն ալ-Ավամ, Թալհաի իբն Աբդ Ալլահ, Սաադ իբն Մուադի, Սաադ իբն Ուբադաի, Թաբիտ իբն Քայս, Յազիդ իբն Թաբիտ, Աբդ Ալլահ իբն Յազիդ, Սահլ իբն Սուֆյաի [կամ Միֆաի], Ութման իբն Մազուն, Դավուդ իբն Ջիբաի, Աբու ալ-Ալլիյաի, Աբդ Ալլահ իբն Ամր իբն ալ-Քադի, Աբու Հուդայֆաի, Իբն Ասիր, Իբն Ռաբիաի, Ամմար իբն Յասիր, Հաշիմ իբն Ասիյաի, Հասան իբն Թաբիտ, Քաաբ իբն Քաաբ, Քաաբ իբն Մալիք, Ջաֆար իբն Աբի Տալիբ: Թող Աստծո խաղաղությունը լինի նրանց բոլորի վրա:

Այս պայմանագիրը գրվել է Մուավիաի իբն Աբի Սուֆյանի կողմից, համաձայն Մուհամմադի՝ Աստծո Դեսպանորդի թելադրանքների, երկուշաբթի օրը՝ հենց Հիջրայի չորրորդ տարվա չորրորդ ամսվա վերջին Մադինայում:

## ԵՐԱՇԽԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

«Այս պատմությունն ուժ ունի միավորելու մուսուլմանական և քրիստոնեական համայնքները: Կրթաթոշակային աշխատանք, որի հրապարակումը ժամանակին է, և դրա բովանդակությունը կարևոր է փոխադարձ հարգանքի և կրոնական ազատության խթանման համար»:

ԻՄԱՄ ՖԵՅՍԱԼ ԱԲԴՈՒԼ ՌԱՈՒՖ, *նախագահ, Կորդոբա նախաձեռնություն*

«Աբրահամյան հավատքների ուսումնասիրությանը նվիրված իր անփոխարինելի ներդրման մեջ Ջոն Էնդրյու Մորոուն պատմում է այն պատմությունը, թե ինչպես Մուհամմադ մարգարեն օգտագործեց հյուրընկալության և պաշտպանության իր անապատային փորձառությունը՝ մուսուլմաններին և քրիստոնյաներին միավորելու համար: Մորոուն մեջբերում է Մարգարեի հանձնարարականը՝ արդի ինչպես այսօր, այնպես էլ իր ժամանակի համար. «Գրքի մարդկանց հետ չպետք է ոչ մի վեճ լինի»:

ՋՈԶԵՖ ՀՈԲՍ, *Միսուրիի համալսարան*

«Այսօր մենք ավելին ենք գիտակցում, քան երբևէ, որ կամ կսովորենք միասին ապրել եղբայրների ու քույրերի պես կամ էլ հիմարների պես միասին կկորչենք: Քրիստոնեական համայնքներին ուղղված Մուհամմադ մարգարեի այս նամակները կարող են ծառայել ինչպես մուսուլմաններին, այնպես էլ քրիստոնյաներին ոգեշնչելու համար, որ մենք ունակ ենք միասին ապրել որպես Աստծո ժողովուրդ, որպես ընկերներ, որպես հարևաններ և որպես նույն փոքրիկ մոլորակի պահապաններ»:

ՕՄԻԴ ՍԱՖԻ, *Հյուսիսային Կարոլինայի համալսարան*

«*Մուհամմադ մարգարեի ուխտերը* օգտակար աղբյուր են բոլոր նրանց համար, ովքեր հետաքրքրված են մուսուլմանական աշխարհի մշակութային և կրոնական պատմությամբ և իսլամի և քրիստոնեության միջև մշակութային կապերով: Դա շատ օգտակար կլինի տարբեր քաղաքակրթությունների միջև հանդուրժողականության, բարի կամքի և ավելի լավ հասկացողության ամրապնդման գործում, և դա նոր հորիզոններ է բացում հետագա ուսումնասիրությունների համար»:

ԱԻԴԱ ԳԱՍԻՄՈՎԱ, *Բաքվի պետական համալսարան*

«Մանրակրկիտ ջանքերով և մեծ նվիրվածությամբ, որ ներդրվեց այս հիմնարար աշխատանքում, պրոֆեսոր Մորրոուն անպայման կկարողանա գրավել իսլամական ուսումնասիրություններով զբաղվող ուսանողների և մասնագետների ուշադրությունը: Հիրավի, գիրքն իրական կոչ է՝ վերանայելու Աբրահամյան երեք հայտնի հավատների՝ քրիստոնեության, հուդայականության և իսլամի միջև փոխհարաբերությունները»:

ԱՄԱՐ ՍԵԼԼԱՄ, *Մուհամեդ I համալսարան*

«Ջոն Էնդրյու Մորրոույի աշխատանքը՝ *Մուհամեդ մարգարեի ուխտերը աշխարհի քրիստոնյաների հետ*, հետաքրքրաշարժ և գրավիչ նյութ է»:

ՔԵՐԸՆ ԼԵՍԼԻ *ՀԵՐՆԱՆԴԵՁ, ԻՍԼԱՄԻ ՄԱՍԻՆ*

«Այս դաշնագրերով սահմանված չափանիշները ոչ միայն առաջադեմ են Մարգարեի ժամանակի համար, դրանք շարունակում են մնալ առաջադեմ մեր սեփական դարաշրջանում»:

ԱՆՆԱ ՄԱՐԻԱ ՄԱՐՏԵԼԼԻ, *Աֆրիկայի և Արևելքի իտալական ինստիտուտ*

«Այս գիրքը փաստում է, թե ինչն է, հավանաբար, իսլամի երրորդ հիմնարար աղբյուրը՝ Մարգարեի դաշնագրերը և ուխտերը Աբրահամյան հավատների մարդկանց մեջ: Դոկտոր Մորոուն ներկայացնում է բացառապես կարևոր բացահայտումներ, որոնք թելադրում են հրեաների, քրիստոնյաների և մուսուլմանների միջև խաղաղ գոյակցություն և ներառում է բազմաթիվ թարգմանություններ՝ համեմատելու համար, թե ինչպես Մարգարեն և նրա հետևորդները քրիստոնյաներին և հրեաներին վերաբերվում էին հարգանքով և խնամքով, շատ ավելին, քան զուտ հանդուրժողականությունը»:

ԲՐԻՋԵԹ ԲԼՈՄՖԻԼԴ, *Նեբրասկայի համալսարան*

«Այս ուխտերը սոսկ պատմական փաստաթղթեր չեն. դրանք մնում են վավերական, պարտադիր ուխտեր բոլոր մուսուլմանների համար՝ իրենց ստեղծման պահից մինչև ժամանակի վերջը: Դոկտոր Մորոույի աշխատանքը լուսավորեց իսլամական հանրային միջազգային իրավունքի նոր հորիզոն և նպաստում է ուխտերի հետագա գիտական ուսումնասիրությանը»:

ՀԻՇԱՄ Մ. ՌԱՄԱԴԱՆ, Ս. Ջ. Դ., *Քվանթլենի պոլիտեխնիկական համալսարան*

«*Մուհամմադ մարգարեի ուխտերը* ժամանակին կատարված, նորարար և խորաթափանց ուսումնասիրություն է, որը մեծ լույս է սփռում Մուհամմադ մարգարեի մտքերի և քաղաքականության վրա»:

ՄՈՀԱՄՄԵԴ ԷԼԿՈՒԻՉԵ, *Մուհամեդ I համալսարան*

«Սա ուշագրավ գիտական ներդրում է. Մուհամմադ մարգարեի ուխտերի ժողովածու, որն այժմ լայնորեն հասանելի է դարձել: Դրանք կազմում են նրա գրույցների բաղկացուցիչ մասը, մանավանդ, որ նրանք վերաբերում են

ոչ մուսուլմաններին և հիմնականում քրիստոնյաներին»:

ՄՈՒՀԱՄՄԱԴ-ՌԵԶԱ ՖԱՔՐ-ՌՈՀԱՆԻ, *Ղոմի համալսարան*

«Դոկտոր Մորոուն դասական արաբերենի և իսլամական ժառանգության բազմակողմանի իմացության իր վարպետությամբ բացահայտ և անվախ կերպով հրավիրում է իսլամով հետաքրքրվող բոլոր գիտնականներին խորհել մի կրոնի մասին, որը ողջունում է երկխոսությունն ու փոխըմբռնումը: Նրա գիրքը պետք է լինի յուրաքանչյուր ազատ հայացքներ ունեցող ընթերցողի գրապահարանում, ով ճշմարտություն է փնտրում իսլամի մասին»:

ՍԱԻԴ ՄԵՆՏԱՔ, *Մոհամմեդ I համալսարան*

«Ջոն Էնդրյու Մորոուն այս գրքի հետ արեց այն, ինչ Մարտին Լյութեր Քինգ կրտսերը իր «Նամակ Բիրմինգհեմի բանտից» աշխատանքով. նա կոչ արեց մարդկանց հաշիվ տալ, որ զերծ են մնում մի բանից, երբ ակնկալվում էր նրանցից պայքարել դրա համար: Նա ասում է. «Ահա ուխտերը: Կարդացեք դրանք: Պատվե՛ք դրանք և պատվե՛ք Մարգարեի մտադրությունը»:

«Կրթաթոշակի փայլուն աշխատանք»:

ՔՐԵՅԳ ՔՈՆՍԻԴԻՆ, *Հաֆինգթոն փոստ*

«Խորամիտ, հասանելի և գիտական. *Մուհամմեդ մարգարեի ուխտերը աշխարհի քրիստոնյաների հետ* տրամադրում են կարևոր ապացույցներ իսլամը հասկանալու համար որպես կրոն՝ հիմնված հարգանքի և հանդուրժողականության իդեալների վրա»:

ԴԱՆ ՎԻԼԿԻՆՍՈՆ, *ՊԱԹԵՈՍ*

## ՈՒԽՏԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

Ի պատասխան այն բարբարոսությունների հետ բախմանը, որն այժմ աշխարհը փլատակների տակ է թողնում, շահագրգիռ մուսուլմաններն ընտրել են օգտվել հրատարակության կողմից ներկայացված՝ աշխարհի քրիստոնյաների հետ Մուհամմադ Մարգարե ուխտերի հազվագյուտ հնարավորությունից՝ սկսելու «Ուխտերի նախաձեռնությունը», որը բոլոր մուսուլմաններից, սուննիներից, շիաներից և սուֆիներից, իրավագիտության դպրոցներից և հոգևոր ուղիներից, ներառյալ գիտնականներց ու ոչ գիտնականներից, խնդրում է իրենց անունները ավելացնել հետևյալ հռչակագրին.

> Մենք՝ ներքոստորագրյալներս, մեզ կապված ենք համարում աշխարհի քրիստոնյաների հետ հաստատած Մուհամմադ մարգարեի (թող խաղաղություն և օրհնություններ լինեն նրա վրա) ուխտերի ոգով և տառով, այն հասկացողությամբ, որ այդ ուխտերը, եթե ընդունվում են որպես անկեղծ, ունեն օրենքի ուժ շարիաթում, և որ շարիաթում ավանդաբար և ճիշտ մեկնաբանված ոչինչ չկա, որ երբևէ հակասած լինի դրանց: Որպես սահաբեկչության և անաստվածության, մարտնչող աշխարհիկության և կեղծ կրոնավորության ոգու զոհեր, որն այժմ սփռված է ողջ աշխարհում, մենք հասկանում ենք ձեր տառապանքները որպես քրիստոնյաներ մեր տառապանքների միջոցով՝ որպես մուսուլմաններ, և ավելի մեծ պատկերացում ենք ձեռք բերում մեր

սեփական տառապանքի մեջ՝ ձեր տառապանքի մասին մտորումների միջոցով: Թող Ամենաողորմածը ողորմածներից ուշադրություն դարձնի արդարների և անմեղների տառապանքներին, թող նա զորացնի մեզ՝ Իր կամքին լիակատար հնազանդությամբ, հետևելու աշխարհի քրիստոնյաների հետ Մուհամմադ մարգարեի ուխտերի ոգուն և տառին՝ նրանց հետ մեր բոլոր գործերում: Հանուն ամենազթառատ, ամենաողորմած Աստծո: Թող փառաբանված լինի Աստված՝ աշխարհների բարերարն ու պահպանողը:

Մենք կուղարկենք այս հայտարարությունը և մեր ստացած հաստատումները, ինչպես նաև *Աշխարհի քրիստոնյաների հետ Մուհամմադ մարգարեի ուխտերի* պատճենները, Մերձավոր Արևելքում, Աֆրիկայում և աշխարհում այլուր գտնվող քրիստոնյա առաջնորդներին, որոնցից շատերն այժմ գտնվում են մուսուլման «ծայրահեղականների» կողմից լուրջ հարձակման ներքո: Նկատի ունենալով անցյալում իսլամի անունով իրականացված ոմբակոծությունները և դաժան կոտորածները, ինչպես նաև մյուսները, որ Աստված արգելում է, սակայն կարող են տեղի ունենալ ապագայում, անվտանգ է ասել, որ եթե երբևէ կգա ժամանակ, որ մուսուլմանները պետք է ինչ-որ բան անեն, որպեսզի խախտեն իսլամիստական ահաբեկչության աճող նույնականացումը ամբողջ իսլամի հետ արևմտյան ոչ մուսուլման բնակչության մտքում, ապա դա հենց հիմա է: Վերջին երկու դարերի ընթացքում իսլամն էականորեն կորցնում էր արևմտյան աշխարհի հետ գրեթե յուրաքանչյուր փոխազդեցություն և ներկայումս գտնվում է

անողոք հարձակման ներքո թե՛ դրսից, թե՛ ներսից: Ուրեմն ինչու՞ պետք է մուսուլմանները մտածեն հասարակության ուշադրությունը սևեռելու ժամանակակից քրիստոնյաների տառապանքների վրա: Պատճառներից մեկն այն է, որ կարեկցանքը տարածվել է տառապանքներ կրող այլ մարդկանց հանդեպ նրանց կողմից, ովքեր իրենք կարեկցանքի կարիքն ունեն, ինչն ուժեղ և ասպետական գործողություն է: Նրանք, ովքեր գալիս են պահանջներով, մարդկանց հեռացնում են նրանցից. նրանք, ովքեր գալիս են օգնության առաջարկներով, ավելի են մոտեցնում նրանց: Ժամանակն է, որ մուսուլմաններն առաջ անցնեն պարզապես բողոքելուց՝ «բայց մենք բոլորս ահաբեկիչ չենք», մի արտահայտություն, որն իր ակնհայտ անկեղծությամբ ավելի շատ ինքնապաշտպանության օղակ ունի շատ ոչ մուսուլմանների համար, անկախ նրանից կհավատան դրան, թե ոչ, հետևաբար պետք է ստանձնել վճռական, նախաձեռնող և հասարակական դիրքորոշում՝ ի աջակցություն խաղաղ քրիստոնյաների, որոնք ներկայումս հարձակման են ենթարկվում ինչ-որ լրջորեն մոլորեցված «մուսուլմանների» կողմից, ովքեր դա անում են հենց Մուհամմադ մարգարեի անունով, թող խաղաղություն և օրհնություններ լինի նրա վրա, հիմնվելով նոր բացահայտված փաստաթղթերի վրա, որոնք արձանագրում են հենց նրա խոսքերը:

Այս նախագիծը, *ինշա Ալլահ* (Աստված տա), կունենա երեք լավ արդյունք, որոնք մենք կցուցադրենք ըստ կարևորության աճման կարգի. 1) ինչպես մենք չենք պատկերացնում ոչ մի այլ բան, այն դրական լույսի ներքո կներկայացնի մուսուլմաններին այն մարդկանց համար, ովքեր դեռ ունակ են մարդկային զգացմունքների 2) դա կարող է փրկել մի քանի կյանք 3) դա արժանավոր բան է անել Աստծո առջև, ըստ Նրա հստակ հրամանի, ինչպես փոխանցվել է Նրա մարգարե Մուհամմադին, թող

խաղաղություն և օրհնություններ լինեն նրա վրա:

Խաղաղությունը չի լինում՝ ստեղծելով խաղաղ զգացողություններ և/կամ մասնակցելով բացառապես խաղաղ հավաքույթներին: Այն արվում է բախվելով և դիմանալով հակամարտությանը՝ սակայն երբևէ չհեռանալով Աստծո հիշողությունից: Հազվագյուտ դեպք է, երբ ռազմավարական առավելությունը, բարոյական ուղղությունը և աստվածային հրամանը ակնհայտորեն համընկնում են, որպեսզի մատնանշեն գործողության որոշակի ընթացք. մենք հավատում ենք, որ Ուխտերի նախաձեռնությունը ներկայացնում է հենց այդպիսի համընկում: Եթե դուք մուսուլման եք, և ձեր խիղճը տանջում է, *Աշխարհի քրիստոնյաների հետ Մուհամեդ մարգարեի ուխտերը* կարդալուց հետո, միշտ հիշում եք, որ ոչ ոք չի կարող ձեզ համար որոշում կայացնել կամ որևէ կերպ պարտադրել ձեզ, և տեսնում եք, որ *կրոնում որևէ հարկադրանք չպետք է լինի*, ձեր անունը ավելացրեք այս նախաձեռնությունում. www.covenantsoftheprophet.org